ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

№ 5
ՄԱՅԻՍ
1962 Թ.

★

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXIX
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ





# ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆԸ ԴԱՍՏԻԱՐԱԿԵԼ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՈԳՈՎ

Սովետական երիտասարդությունը, իր մարտական ավանդարդ լենինյան կոմերիտմիության գլխավորությամբ, մեր երկրի պատմության բոլոր վճռական էտապներում իրեն դրսևորել է որպես Կոմունիստական պարտիայի հավատարիմ օգնական և հուսալի ռեզերվ: Կոմերիտմիության ուժի ու ամրության աղբյուրը, նրա բոլոր հաջողությունների գրավականը Կոմունիստական պարտիայի ղեկավարությունն է: ՀամԼԿԵՄ-ի ամբողջ հերոսական պատմությունն անխզելիորեն կապված է Կոմունիստական պարտիայի պատմության հետ:

Պարտիայի ղեկավարությամբ կոմերիտմիությունը շարունակ կատարելագործում է իր աշխատանքի մեթոդները, ամրապնդում և ընդլայնում ազդեցությունը երիտասարդության վրա: Եվ այժմ, երբ մեր երկիրը թևակոխել է կոմունիստական հասարակարգի ծավալուն շինարարության ժամանակաշրջանը, երբ պարտիան, ամբողջ սովետական ժողովուրդը լուծում են կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, կոմունիստական հասարակական հարաբերությունների կարգացման, նոր մարդու դաստիարակության վիթխարի խնդիրները, ավելի են մեծանում կոմերիտմիության դերն ու նշանակությունը՝ որպես սովետական երիտասարդության ավանգարդի և պարտիայի օգնականի: Վերջին տարիներին Լենինյան կոմերիտմիության ամբողջ գործունեության վրա բացառիկ բարերար կերպով անդրադարձավ անհատի պաշտամունքի հետևանքների վճռական վերացումը:

Պարտիայի XXII համագումարի որոշումներում, ՍՄԿՊ նոր Ծրագրում հստակորեն նշված են նաև կոմերիտմիության խնդիրները կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում: Լենինյան կոմերիտմիության գլխավոր խնդիրն է՝ պատանիներին ու աղջիկներին դաստիարակել ռևոլյուցիոն պայքարի հերոսական տրադիցիաներով, բանվորների, կոլտնտեսականների և ինտելիգենցիայի անձնվեր աշխատանքի օրինակներով, մարքսիզմ-լենինիզմի մեծ գաղափարներով, ձգտել, որ կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի սկզբունքները դառնան երիտասարդության առօրյա կյանքի օրենքը:

Կոմերիտմիությունը կոչված է երիտասարդներին դաստիարակելու որպես հաստատակամ և համոզված մարտիկ, յուրաքանչյուր երիտասարդի մեջ վարգացնելու կոմունիստի վեհ հատկությունները: Լինել կոմունիստ՝ նշանակում է անհանդուրժողաբար վերաբերվել թերություններին, հաղթահարել դժվարությունները, լինել այնտեղ, ուր լուծվում են կոմունիզմի կառուցման գլխավոր խնդիրները: Կոմերիտմիությունը պետք է ավելի ակտիվ պայքարի բուրժուական գաղափարախոսության ու բարոյականության դրսևորումների, կապիտալիզմի մնացուկների դեմ, իր դրոշի տակ համախմբի սովետական բոլոր պատանիներին ու աղջիկներին:

ՍՄԿՊ XXII համագումարի առաջադրած խնդիրները պահանջում են կոմերիտական կազմակերպությունների գործունեության վճռական բարելավում և հետագա կատարելագործում, նրանց մարտունակության բարձրացում: Պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ ու օգնությամբ կոմերիտական կազմակերպությունները պետք է հասնեն այն բանին, որ ավելի աճի կոմերիտմիության, որպես սովետական երիտասարդության առաջավոր ջոկատի դերը՝ կոմունիզմի համար մղվող պայքարում:

Կոմունիզմը և աշխատանքն անբաժանելի են, ընդգծեց Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովը ՍՄԿՊ XXII համագումարում: Ահա թե ինչու աշխատանքային գործունեության համար երիտասարդության նախապատրաստումը, նրան աշխատանքի՝ որպես առաջին կենսական պահանջմունքի նկատմամբ սիրով ու հարգանքով համակելը կազմում են երիտասարդ սերնդի կոմունիստական դաստիարակության ողջ աշխատանքի էությունը, միջուկը: Եվ քաջ գիտակցելով այդ, ամենուրեք՝ ծանր ինդուստրիայի նորակառույցներում, հանքահորերում, գիտական լաբորատորիաներում ու ուսումնական հաստատություններում, խոպան ու խամ հողերի յուրացման գործում կոմերիտականները, սովետական պատանիներն ու աղջիկները հերոսական աշխատանք են կատարում:

Միայն վերջին չորս տարվա ընթացքում մեր երկրում շահագործման են հանձնըվել կոմերիտական համամիութենական հարվածային կառույցներ հայտարարված ավելի քան 300 արդյունաբերական օբյեկտներ, կոմերիտականների և երիտասարդների անմիջական մասնակցությամբ անց է կացվել հինգ հազար կիլոմետր գազամուղ և նավթամուղ, կառուցվել և էլեկտրիֆիկացիայի է ենթարկվել 13 հազար կիլոմետր երկաթուղի. անասնապահական բնագավառն աշխատանքի են ուղարկվել մոտ երկու միլիոն պատանիներ ու աղջիկներ. կոմերիտականներն ու երիտասարդները միայն անցած տարի մշակել են 12 և կես միլիոն հեկտար եգիպտացորեն: Հարազատ պարտիայի կոչով, իրենց ջահել սրտերի թելադրանքով խոպան և խամ հողերի շրջանները մշտական բնակության են մեկնել 750 հազար պատանիներ ու աղջիկներ, իսկ երեք և կես միլիոն երիտասարդներ օգնել են այդ շրջանների բերքահավաքին:

Երիտասարդությունը ջերմորեն արձագանքեց նաև պարտիայի՝ «սովորել, աշխատել և ապրել կոմունիստաբար» կոչին: Կոմերիտմիության նախաձեռնությամբ երկրում լայնորեն ծավալվեց կոմունիստական աշխատանքի բրիգադաների ու հարվածայինների շարժումը, որը պատանիների ու աղջիկների մեջ սեր ու հարգանք է դաստիարակում աշխատանքի հանդեպ՝ որպես առաջին կենսական պահանջմունք, օգնում է կոմունիստական հասարակարգի մարդու ձևավորմանը: Հայրենասիրական այդ մեծ շարժմանը ներկայումս մասնակցում են 11 միլիոն պատանիներ ու աղջիկներ:

Ապրիլի 16-ից 20-ը Մոսկվայում, հինավուրց Կրեմլի Համագումարների նորակերտ պալատում տեղի ունեցավ լենինյան կոմերիտմիության XIV համագումարը: Սովետական պատանիների ու աղջիկների տասնինն ու կես միլիոնանոց կազմակերպությունը ներկայացնող չորս հազար պատվիրակներ քննարկեցին մեր երիտասարդության կյանքի, աշխատանքի և ուսման կենսական հարցերը, որոշեցին կոմերիտմիության, ամբողջ սովետական երիտասարդության գործունեության խնդիրները՝ ՍՄԿՊ XXII համագումարի պատմական որոշումների, ՍՄԿՊ նոր Ծրագրի լույսի տակ: Համագումարը ցուցադրեց սովետական երիտասարդության կուռ համախմբվածությունը Կոմունիստական պարտիայի շուրջը, այն, որ նա պարզ կերպով



հասկանում է կոմունիզմի կառուցման մեծ խնդիրները և պատրաստ է ապագայում էլ ընթանալու կոմունիզմ կերտող մարտիկների առաջին շարքերում:

Համագումարին հղած իր ողջույնում Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն նշեց. «Անձնվեր և ոգեշունչ պայքարը ՍՄԿՊ Ծրագրի իրականացման համար, ամենօրյա ամենաակտիվ, գործնական մասնակցությունը կոմունիզմի վեհասքանչ շենքի կառուցմանը՝ մեր օրերում դրանումն է մեր երկրի յուրաքանչյուր կոմերիտականի ու կոմերիտուհու, ամբողջ երիտասարդ սերնդի մեծագույն երջանկությունն ու ազնիվ նպատակը և ամբողջ կյանքի վսեմ իմաստը: Այժմ մեր ժամանակի իսկական երիտասարդ հերոսը նա է, ով ամեն մի տեղամասում, ուր նրան ուղարկում են մեր մեծ Հայրենիքն ու սովետական ժողովուրդը, անդուլ կերպով և աշխատասիրությամբ կենսագործում է ՍՄԿՊ Ծրագրի առաջադրած խնդիրները»:

ՀամԼԿԵՄ XIV համագումարում ճառով հանդես եկավ Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովը: Նա բարձր գնահատեց լենինյան կոմերիտմիության, մեր ամբողջ երիտասարդության հայրենանվեր գործունեությունը և նշեց այն խնդիրները, որոնք պետք է լուծվեն առաջիկայում: Ն. Ս. Խրուշչովն ամբողջ ուժով ընդգծեց աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևորությունը: Հոգ տանել աշխատանքի արտադրողականության աճի մասին՝ կնշանակի ամեն ինչ անել, որպեսզի ավելանա երկրի հարստությունը: Աշխատանքի բարձր արտադրողականությունը, նրա ճիշտ կազմակերպումը, միլիոնների աշխատանքով ստեղծվող բարիքների խելացի օգտագործումը կոմունիզմի կառուցման հիմքերի հիմքն են:

Ընկեր Ն. Ս. Խրուշչովը համագումարում նշեց, որ մեզ մոտ թերություններ կան դաստիարակչական աշխատանքում. կան հին խայտառակ մնացուկներ, որոնք դեռևս լիովին վերացված չեն: Կան առանձին երիտասարդներ, որոնք ուզում են առանց աշխատելու օգտվել կյանքի բոլոր բարիքներից. դրանք պորտաբույծ տարրերն են: Մեր հասարակությունը չի կարող հաշտվել այդ երևույթների հետ, որոնց դեմ մղվող պայքարի առաջին շարքերում պետք է լինի կոմերիտմիությունը:

Պարտիան կոմերիտմիությանը հանձնարարել է մի մեծ ու պատասխանատու խնդիր ևս՝ բազմակողմանիորեն օգնել դպրոցին և ղեկավարել պատանի պիոներների բազմամիլիոն կազմակերպությունը: Կոմերիտական կազմակերպությունները պետք է օգնեն սովորողներին՝ յուրացնելու կոմունիստական աշխարհայացքի սկզբունքները, մշակելու ճիշտ համոզմունքներ—կոլեկտիվիզմ, աշխատասիրություն, անձնական շահը հասարակական շահերին ենթարկելու պատրաստակամություն: Պայքարն ընդհանուր 8-ամյա և միջնակարգ կրթության համար, աշակերտների խոր, կայուն գիտելիքների համար, ուսման նկատմամբ գիտակցական վերաբերմունք դաստիարակելը, ամուր կարգապահությունը՝ կոմերիտական կազմակերպությունների կարևորագույն խնդիրներն են: Կոմերիտմիությունը դպրոցում և պիոներական կազմակերպություններում կատարած իր աշխատանքով պետք է ակտիվ մասնակցի աշխատասեր, ֆիզիկապես և բարոյապես առողջ, կենսուրախ սերնդի ձևավորմանը:

Հայաստանի լենինյան կոմերիտմիությունը հանդիսանում է ՀամԼԿԵՄ մարտական ջոկատներից մեկը, որը ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ վզալի աշխատանք է կատարել երիտասարդության կոմունիստական դաստիարակության, նրան տնտեսական ու կուլտուրական շինարարության մեջ ներգրավելու ուղղությամբ: Հայաստանի երիտասարդությունը հարվածային ուժ է կոմունիստական շինարարության բոլոր տեղամասերում: Վերջին տա-

րիների ընթացքում պատանիների ու աղջիկների ակտիվ մասնակցությամբ ռեսպուբլիկայում կառուցվել են ավելի քան 20 կարևորագույն ժողովրդատնտեսական օբյեկտներ, կոմերիտականներն ստանձնել են մեծ քիմիայի և լեռնահանքային արդյունաբերության վեց օբյեկտների շեֆությունը:

Պայքարելով խնայողության համար, արդյունաբերության բնագավառում աշխատող երիտասարդները վերջին չորս տարում տնտեսել են ավելի քան 120 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, երեք հազար տոննա գունավոր մետաղ, լայն մրցություն են ծավալել աշխատանքի արտադրողականության բարձրացման, ներքին ռեզերվների բացահայտման, թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցման, որակի բարելավման համար:

Ռեսպուբլիկայի կոմերիտական կազմակերպությունները կոմունիստական աշխատանքի շարժման մեջ ընդգրկել են ավելի քան 45 հազար երիտասարդների: Գյուղական կոմերիտականներն ու երիտասարդները հանդես եկան «հարուստ հեկտարի համար» հայրենասիրական հիանալի նախաձեռնությամբ, շարժում, որին այժմ մասնակցում է գյուղական երիտասարդության մեծամասնությունը:

Արդյունավետ և նպատակասլաց է դարձել քաղաքական-գաղափարական աշխատանքը, այն այժմ ավելի սերտորեն է կապվում կյանքին, կոմունիստական շինարարության գործնական խնդիրներին: Սակայն ռեսպուբլիկայի կոմերիտական կազմակերպությունների գործունեության մեջ և, հատկապես, պատանիների ու աղջիկների կոմունիստական դաստիարակության ու նրանց հանրօգուտ աշխատանքում ներգրավելու ասպարեզում, լուրջ թերություններ կան:

Որոշ երիտասարդներ խախտում են սոցիալիստական համակեցության նորմերը, խուսափում հանրօգուտ աշխատանքից, վարում պորտաբույծ կյանք: Կան այնպիսի երիտասարդներ, որոնց կյանքի իմաստը ընչաքաղցությունն է: Դեռևս չեն վերացել խնամառուները, եսասերները: Սրանք անցյալի մնացուկներ են, որոնց դեմ պետք է վճռական պայքար մղել, ձգտելով այն բանին, որ կոմունիստական բարոյականության սկզբունքները դառնան յուրաքանչյուր պատանու ու աղջկա վարքի պարտադիր նորմերը:

Բուրժուական գաղափարախոսության և բարոյականության ազդեցության դեմ, անցյալի վերապրուկների դեմ մղվող պայքարը պետք է լինի սուր, հարձակողական: Ոչ թե պաշտպանվել, այլ հարձակվել գաղափարական ճակատում՝ սովորեցնում է պարտիան: Անհրաժեշտ է զգայուն և ուշիմ վերաբերմունք երիտասարդության հոգևոր պահանջմունքների նկատմամբ, մշտական հոգատարություն՝ պատանիների ու աղջիկների կրթության, աշխատանքի և կենցաղային պայմանների բարելավման, կուլտուրական ժամանցի ու հանգստի կազմակերպման գործին:

Հայաստանի կոմերիտական կազմակերպությունները հաճախ արժեքավոր նախաձեռնություն են հանդես բերում, ստանձնում են մեծ պարտավորություններ, սակայն հետևողականորեն չեն պայքարում դրանց կատարման համար: ՀամԼԿԵՄ XIV համագումարում նշվեց, որ կոմունիստական աշխատանքում երբեմն ընդհանուր դատողություններն ու կոչերը չեն ամրապնդվում կոնկրետ կազմակերպչական աշխատանքով: ՀամԼԿԵՄ Կենտկոմի հաշվետվության մեջ նման օրինակների թվում բերվեց և հետևյալը. Հայաստանի ԼԿԵՄ Կենտկոմի ղեկավարները 1961 թվականը հայտարարեցին արտադրության մեջ խոտանի կրճատման և անարտադրողական ծախսերի իջեցման համար կոմերիտական արշավի տարի: Հայտարարեցին... և դրանով էլ «ավարտեցին իրենց արշավը»: ԼԿԵՄ Կենտկոմը ո՛չ միայն չկատարեց անհրաժեշտ կազմակերպչական աշխատանք այդ մեծ նախաձեռնության իրականացման նպատակով, այլ նույնիսկ չհետաքրքրվեց, թե ինչ են անում կոմերիտական կազմակերպությունները գործարաններում և կառույցներում: Հայաստանի կոմերիտմիությունը քննադատվեց նաև եգիպտացորենագործների համամիութենական մրցությամբ իր ստանձնած պարտավորությունները չկատարելու համար:



Ռեսպուբլիկայի կոմերիտական կազմակերպությունները պետք է ո՛չ միայն պարտավորություններ ստանձնեն, այլև, որ գլխավորն է, կազմակերպեն դրանց կատարումը: Առաջիկայում Հայաստանի կոմերիտական կազմակերպությունները պետք է ապահովեն կոմերիտականների և ամբողջ երիտասարդության ակտիվ ու արդյունավետ մասնակցությունը ընթացիկ տարվա տնտեսական պլանի կատարման ու գերակատարման համար մղվող համաժողովրդական պայքարին:

Ռեսպուբլիկայի գյուղական երիտասարդության պարտքն է լինել մեր երկրի գյուղատնտեսության բոլոր ճյուղերի հզոր վերելքի ուղղությամբ ՍՄԿՊ Կենտկոմի Մարտյան պլենումի որոշումների կենսագործման համար մղվող համաժողովրդական պայքարի առաջին շարքերում:

Հաշվի առնելով իր հասցեին արված քննադատությունը, Հայաստանի կոմերիտմիությունը, պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ ու օգնությամբ, պետք է արագորեն վերացնի նշված թերությունները: Երիտասարդության կոմունիստական դաստիարակության ասպարեզում կոմերիտմիության առջև ծառացած նոր խնդիրները պահանջում են կազմակերպչական աշխատանքի հետագա վերելք և կոմերիտական օրգանների ղեկավարության մեթոդների կատարելագործում, ընդունված որոշումների ու պարտավորությունների կատարման պատասխանատվության բարձրացում, քննադատության և ինքնաքննադատության լայն ծավալում: Այդ կարևոր գործում գլխավորը՝ ՍՄԿՊ Ծրագրի խոր պարզաբանումն է, յուրաքանչյուր երիտասարդ աշխատողին կոմունիզմի մոտալուտ հաղթանակի հավատով պինելն է և ամբողջ երիտասարդության մոբիլիզացումը պարտիայի XXII համագումարի որոշումները կենսագործելու համար:

ՀամԼԿԵՄ XIV համագումարը լենինյան կոմերիտմիության, սովետական ամբողջ երիտասարդության անունից մեծ պարտավորություններ ստանձնեց երկրի ժողովրդական տնտեսության մի շարք կարևորագույն խնդիրների լուծմանն ամենաակտիվ մասնակցություն ունենալու վերաբերյալ: Այդ խնդիրների իրագործման մեջ իրենց արժանի ավանդը պետք է մուծեն նաև Հայաստանի կոմերիտականներն ու ամբողջ երիտասարդությունը:

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ և օգնությամբ կոմերիտական կազմակերպությունները բոլոր կոմերիտականների ու երիտասարդների ուժերն ի սպաս կդնեն կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը, նոր մարդու ձևավորման մեծ ու դժվարին գործի հաղթանակին: Հայաստանի երիտասարդությունը եղել է և կմնա կոմունիզմ կառուցողների առաջին շարքերում:

Ոգեշնչված հարազատ պարտիայի՝ կոմունիզմի կառուցման վեհ ծրագրի գաղափարներով, լենինյան կոմերիտմիությունն առաջ է ընթանում դեպի լուսավոր գալիքը՝ դեպի կոմունիստական հասարակարգը:

---

## ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՏՈՆԸ

# ՄԵՍՐՈՊ ՄԱՇՏՈՑ

(Ծննդյան 1600-ամյակի առթիվ)


**Ս. ԵՐԵՄՅԱՆ**

Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ


*Հանճարեղ Մեսրոպ Մաշտոցը ծնվել և գործել է այնպիսի ժամանակ, երբ մեր ժողովուրդն իր կյանքի բոլոր բնագավառներում մեծ հեղաբեկում էր ապրում։*

*Շուրջ 600 տարի պահպանեց իր գոյությունը Մեծ Հայքի ստրկատիրական կենտրոնացված պետությունը, մաքառելով Արևելքի և Արևմուտքի աշխարհակալությունների դեմ։ Վերջին անգամ Մեծ Հայքի թագավորությունն ամրապնդեց իր դիրքերը 298 թվականի Մծբինի դաշնագրով, երեք քառորդ դար ևս երկարացնելով իր կյանքը։ Երկրի ներսում տեղի էին ունեցել այնպիսի փոփոխություններ, որ անխուսափելի էին դարձրել հայ Արշակունիների թագավորության անկումը և նախարարական «տէրութիւն»-ների ձևավորումը իբրև վասալական կախման մեջ գտնվող առանձին քաղաքական միավորներ։*

*II—III դարերից սկսած ստրկատիրական սիստեմի ճգնաժամն ընդգրկել էր ամբողջ Հին աշխարհը, ներառյալ նաև Հայաստանը։ Այդ ժամանակվա մեծ աշխարհակալությունները՝ Հռոմեական կայսրությունը և Սասանյան Իրանը, շնորհիվ հզոր կենտրոնական իշխանության և արտաքին նվաճումների, կարողացան նույնիսկ խորացող ճգնաժամի պայմաններում հարատևել։ Այլ էր Հայաստանի վիճակը։ Ճիշտ է Մեծ Հայքն իր ծավալով և նշանակությամբ գրավում էր երրորդ տեղը, սակայն Հռոմեական կայսրության և Սասանյան Իրանի համեմատությամբ շատ ավելի փոքր էր, իսկ կենտրոնական իշխանությունը՝ հայ Արշակունիների արքունիքը, ավելի թույլ էր և հարկադրված էր հաշվի նել հայ նախարարների օրըստօրե աճող կենտրոնախույս տրամադրությունները*

*Մեծ Հայքի թագավորության գերագույն տերը համարվում էր արքունիքը, հանձին հայ Արշակունի գահակալի։ IV դարում տակավին հայոց թագավորին էին ենթարկվում ծայրամասային հզոր իշխանությունները՝ Աղձնյաց, Կորդվաց, Նոր-Շիրականի, Գուգարաց բդեշխությունները և Կասպից երկիրը (Փայտակարանը)։ Նրանց միջև գտնվող Հայաստանի «Միջնաշխարհը» համարվում էր արքունիքի սեփականություն, ուստի կոչվում էր «արքունի երկիր»։ Ժամանակի ընթացքում, սակայն «Միջնաշխարհում» կազմակերպվեցին բազմաթիվ մանր և խոշոր նախարարություններ, եկեղեցական կալվածքներ և, «արքունի երկիր» հասկացողությունը այլևս համանիշ չէր «Միջնաշխարհին», որը IV դարի երկրորդ կեսին ներառնում է Այրարատն ու Հարևան գավառները։*





ՄԵՍՐՈՊ ՄԱՇՏՈՑ

Գործ՝ Ռ. Գարզալյանի

Ծննդյան 1600-ամյակի առթիվ մրցանակաբաշխության ներկայացված նկարներից

«Արքունի երկրի» տերիտորիայի վրա գտնվող գյուղական համայնքները՝
«շէն»-երը, ենթարկվում էին արքունիքին։ Շինականները պարտավոր էին պե-
տությանը վճարել տարբեր հարկեր և «մարդահարկի» կարգով մասնակցել
պետական շինարարական աշխատանքներին։ Նրանք պատերազմի ժամանակ
կազմում էին հետևակազորքը։ Գյուղացիների վրա էր նաև գավառում բանա-
կած ռազմական ուժերի ու նրա հրամանատար նախարարի սնուցումն ու
սպասարկումը («ռոճիկ ի կերակուր»)։ IV դարից շինականները պարտավոր
էին տասանորդ և պտղի տալ եկեղեցուն — գյուղի քահանային և թեմական
առաջնորդ եպիսկոպոսին։

Յուրաքանչյուր գյուղական համայնք՝ «շէն», բաղկացած էր «երդ»-երից—
մեծ և փոքր ընտանիքներից, որոնք հողօգտագործման կարգով ժառանգա-
բար ստանում էին «հող երդոյ» ըստ շնչի։ Շէնը կամ գյուղը գլխավորում էր
«ատադ շինին», «գեղջ ատագ»-ը կամ «դեհկան»-ը, որը պատասխանատու էր
պետության առաջ իրեն ենթակա գյուղի բոլոր տուրքերի ու պարտավորու-
թյունների համար։ Ժամանակի ընթացքում դեհկանի պաշտոնը դառնում է ժա-
ռանգական։ IV դարի սկզբից, երբ քրիստոնեությունը դարձավ Մեծ Հայքի
պետական կրոնը, յուրաքանչյուր գյուղում դեհկանի կողքին հանդես եկավ
գյուղի քահանան, որի պաշտոնը նույնպես ժառանգական դարձավ։ «Դեհկա-
նությունը» (գյուղական համայնքների պետերը) ենթարկվում էր Մեծ Հայքի
հազարապետին, որը գլխավորում էր երկրի ֆինանսական գործերը և պետա-
կան շինարարությունը։ Դեհկանի և գյուղական քահանայի ընտանիքները կազ-
մեցին գյուղի ունևոր շերտերի վերնախավը, տնտեսապես իրենց ենթարկելով
համագյուղացիներին։ IV դարի ընթացքում, այսպիսով, գյուղական համայնքի
ներսում ավելի արագացավ սոցիալական շերտավորման պրոցեսը։
Այս երևույթը հետևանք էր նաև սորկատիրական էկոնոմիկայի ժամանա-
կավոր աշխուժացման, երբ 298 թվականից հետո հայկական քաղաքները նո-
րից ներգրավվեցին միջազգային կարավանային առևտրում, և ավելի զար-
գացավ ապրանքային տնտեսությունը։ Հարկերի մի մասը գանձվում էր դրա-
մով և նատուրալ տնտեսության պայմաններում գյուղացին հարկադրված դի-
մում էր վաշխառուին։ Մեզ հասած տեղեկությունները ցույց են տալիս, որ
վաշխառուի դերում այդ ժամանակ հանդես էր գալիս նաև գյուղի քահանան։
Շինականը, ընկնելով վաշխառուի ճանկը, հետզհետե աղքատանում էր այն
աստիճան, որ զրկվում էր հողօգտագործման ժառանգական իրավունքից, վա-
ճառելով այն գյուղի ունևորներին։ IV դարում աճում է հողազուրկ գյուղացի-
ների՝ «անաշխարհիկ»-ների թիվը, որոնք հարկադրված էին «վարձկան» դառ-
նալ ունևորների մոտ։
Այդ ժամանակաշրջանում գյուղի ունևոր շերտերը, առաջին հերթին դեհ-
կանի և քահանայի ընտանիքները, բացի վարձկաններից ունեին նաև ստրուկ-
ներ և աղախիններ։ Դեռևս VI—VII դարերում շինականի ընտանիքն եկող
հարսը օժիտի հետ բերում էր նաև «արծաթագին աղախիններ»։ Իսկ գյուղի
ստորին խավերը դառնալով չքավոր և տնանկ, զրկվում էին համայնքի անդամ
լինելու իրավունքից և, իբրև «նժդեհ» ու «պանդուխտ», փախչում էին գլխա-
վորապես քաղաքները, որտեղ ավելի նպաստավոր պայմաններ կային կյանքի
համար։ Փախչող գյուղացիները համալրում էին «ռամիկների» քաղաքային
չքավոր մասսան։ Ժամանակի ընթացքում քաղաքների շուրջը առաջացան ա-
ռանձին թաղամասեր՝ «աւան»-ներ, որտեղ գլխավորապես ապրում էին ռա-

միկները, այսինքն՝ տարբեր ծագում ունեցող ապաստան գտած կիսազատ և անազատ աշխատավորների զանգվածները։

Ստրկատիրական տնտեսաձևի բնորոշ կողմն էր քաղաքների զարգացումը։ 298 թվականից հետո Հայաստանի քաղաքները մայրաքաղաք Արտաշատի միջոցով նորից ներգրավվում են միջազգային կարավանային առևտրում և զարկ են տալիս ապրանքային տնտեսության զարգացմանը։

IV դարի Հայաստանում դեռևս գոյություն ունեին հելլենիստական ժամանակաշրջանից եկող քաղաքային կիսաինքնավար համայնքներ, որոնք գտնըվում էին թագավորի հովանավորության ներքո։ Յուրաքանչյուր այդպիսի քաղաք համարվում էր «արքունի քաղաք» և կառավարվում էր թագավորի կողմից նշանակվող քաղաքապետ «շահապ»-ի միջոցով։ Դեռևս Արտաշեսյանների ժամանակներից սկսած պետությունը յուրաքանչյուր «արքունի քաղաքին» տրամադրել էր հսկայական հողային տարածություններ, ամբողջ գավառներ, որոնք հաճախ կոչվում էին այդ քաղաքների անունով։

Քաղաքի արվարձաններում էին գտնվում առևտրա-վաշխառուական և առևտրական վերնախավի մասնատիրական տնտեսությունները՝ ագարակները և դաստակերտները։ Այս տնտեսություններում հիմնական արտադրողներն էին ստրուկները, որոնք ապրում էին ագարակներում ու դաստակերտներում առանձին ընտանիքներով՝ «երդումարդ»-ով։ Սրանց մեջ կային նաև «վարձկաններ», գլխավորապես գյուղից փախած տնանկ, ընչազուրկ գյուղացիներ, որոնք «մշակութիւն» էին անում։ Նրանց աշխատանքը մեծ մասամբ ուներ սեզոնային բնույթ։

Նոր պայմաններում, երբ հետզհետե թուլանում էր կենտրոնական իշխանությունը, նախարարները ձգտում էին ինքնուրույնության։ Սկզբում ջանում էին ժառանգական դարձնել իրենց պաշտոնը և դրա հետ միասին նաև տիրակալական իրավունքները տվյալ գավառում։ Թագավորներն այլևս ուժ չունեին արգելելու այդ պրոցեսը։ Ընդհակառակը, նրանք հարկադրված էին ընդառաջել նախարարների ձգտումներին, իրենց հրամաններով օրինականացնել ստեղծված դրությունը։

IV դարում Հայաստանում ստեղծվել էր այնպիսի վիճակ, երբ թագավորը չէր կարող հաշվի չառնել նախարարների ժառանգական իրավունքները։ Ժառանգական էին դարձել առաջին հերթին արքունի պաշտոնները՝ «գործակալութիւն»-ները և նրանց հետ կապված տերիտորիաների տիրակալությունը։ Գոյություն ունեին Հայոց սպարապետին, մարդպետին, թագադիր-ասպետին, մաղխազին և այլ գործակալներին պատկանող ժառանգական տիրակալություններ դարձած «հայրենիք»-ներ։ Միաժամանակ առաջ են գալիս կաթողիկոսական տան և այլ եպիսկոպոսական տների ընդարձակ ժառանգական տիրակալություններ։

IV դարի երկրորդ կեսին հայ Արշակունիները պայքարում էին երկրի մասնատվածության խորացման դեմ և ձգտում ժառանգական հողատիրություն— «հայրենիքին» հակադրել պայմանական հողատիրությունը՝ «պարգևական» հողերը, որոնք ժամանակավորապես տրվում էին ծառայության դիմաց, գլխավորապես ազատներին — հեծյալներին։ Հայ Արշակունիների՝ կենտրոնական իշխանությունը պահպանելու համար մղած պայքարի հիմնական հենարանն էին Հայաստանի քաղաքները, իրենց հատկացված ընդարձակ շրջակա տերիտորիաներով։



Նախարարական և եկեղեցական «հայրենիքներում» գտնվող գյուղական համայնքները փաստորեն կախման մեջ են ընկնում հողի նոր տերերից, որոնք պահանջում են շինականից «կոռ և պարհակութիւն» անել իրենց համար։ Այժմ շինականը միաժամանակ ենթակա էր կենտրոնական իշխանությանը և տեղական իշխանին և, բացի դրանից, հարկատու էր եկեղեցուն։ Արշակունիների անկումից հետո, Սասանյան Իրանը և Արևելյան Հռոմեական կայսրությունը (Բյուզանդիա) նախարարներից պահանջում են համապատասխան հարկեր ըստ նրանց զբաղեցրած տերիտորիայի, անկախ նրանից, թե այդ հողերը մշակվում են, թե ոչ. ուստի հողատերերն ամեն կերպ ձգտում են անմիջական արտադրողին՝ հողագործ գյուղացուն, կապել հողի հետ։ Այսպիսով, նախկին ազատ շինականները դառնում են կախյալ շինականներ, և հայ շինականի վիճակը հանգում է Հռոմեական կայսրության ենթակա Փոքր Ասիայի կոլոնների վիճակին։

Կենտրոնական իշխանության՝ Հայոց թագավորի իրավունքներն ավելի սահմանափակվեցին քաղաքային համայնքների ոչնչացումով։

363 թվականի «ամոթալի» դաշնագրով Հայաստանի համար ստեղծվեց անելանելի ծանր կացություն։ 364—368 թթ. ընթացքում Սասանյան Շապուհ Բ արքան մի քանի անգամ ներխուժեց Հայաստանի խորքերը և ավերեց գլխավոր քաղաքները, իսկ նրանց արհեստավորական և առևտրական ազգաբնակչությանը գերեվարեց և քշեց Պարսկաստանի խորքերը։

Այս ավերածությունները ևս նպաստեցին այն բանին, որ դրամա-ապրանքային տնտեսությունը հետզհետե զիջեց իր դիրքերը բնատնտեսությանը։ Քաղաքների փոխարեն բարձրացավ ֆեոդալական դղյակի դերը։ Նախարարական տերիտորիաները՝ «տէրութիւն»-ները, դարձան կենտրոնական իշխանությանը թույլ կապերով կապված ինքնամփոփ տնտեսական և քաղաքական միավորներ։

Քաղաքային համայնքների վերացումը և բնատնտեսության գերիշխանությունը հետզհետե վերացնում են ստրկատիրական տնտեսաձևը։ Արքունական, նախարարական և եկեղեցական տնտեսություններում «ծառաների»՝ ստրուկների աշխատանքը, մանավանդ գյուղատնտեսության մեջ, փոխում է իր բնույթը։ Ստրուկները ստանում են արտադրության միջոցներ և ամրացվում հողին, այսինքն՝ դառնում են կոլոններ և իրենց բնույթով մոտենում կախյալ շինականներին։ Նոր արտադրաեղանակի՝ ֆեոդալական սիստեմի պրոգրեսիվությունը նախ և առաջ այն է, որ ստրկատիրական հասարակարգի անմիջական արտադրողը՝ ստրուկը, դառնում էր անձնապես ազատ մարդ։ Նա ստրուկից դառնում էր ֆեոդալական կախման մեջ գտնվող գյուղացի։

Ժամանակի ընթացքում ստրկատիրական կալվածքները՝ ագարակներն ու դաստակերտները, դառնում են արտադրության միջոցներ ստացած ու հողին ամրացված ստրուկների՝ «երդումարդ»-երի բնակավայրեր։ Այսպիսով, գեղջուկների, ազատ և կախյալ շինականների կողքին առաջ են գալիս «բնակիչք ագարակին», որոնք հետզհետե դառնում են շինականներին իրավահավասար ֆեոդալականացող Հայաստանի անմիջական արտադրողներ։

Հայ Արշակունիների իշխանությունն այդ ժամանակ վերջնականապես կորցրել էր իր սոցիալական և տնտեսական հենարանը, «Թագաւոր Հայոց Մեծաց» տիտղոսը կորցրել էր իր նախկին նշանակությունն ու բովանդակությունը, դառնալով սոսկ ձևականություն։

Սակայն Հայաստանի կոնկրետ պայմաններում այս ինքնին պրոգրեսիվ երևույթը, որպիսին է ֆեոդալականացման պրոցեսի խորացումը, ուներ և իր բացասական կողմերը։ Մերձավոր Արևելքի քաղաքական իրադրության պայմաններում Հայկական բարձրավանդակի ռազմա-ստրատեգիական կոմունիկացիաներին տիրապետելու համար դարեր շարունակ միմյանց հետ մարտնչում էին Հռոմեական կայսրությունը և Սասանյան Իրանը։ Մեծ Հայքի կենտրոնացված միապետության քայքայումն ու անկումն ուներ ճակատագրական նշանակություն հայկական պետականության հետագա գոյության համար։ Այդ ժամանակվա հայ քաղաքական գործիչները ձգտում էին առաջն առնել այս երևույթի, սակայն ֆեոդալական պարտիկուլյարիզմը հաղթանակ էր տանում։

Հայ նախարարների մեծագույն մասն անցել էր Սասանյան Իրանի, մի մասն էլ՝ Հռոմեական կայսրության կողմը, իսկ Մեծ Հայքի թագավորության ծայրամասերն անջատվել էին։ Մնացել էր «Միջնաշխարհը»։ Ստեղծված պայմաններում երկու պայքարող աշխարհակալ պետությունները փոխադարձ համաձայնության եկան և 387 թվականին երկիրը բաժանվեց երկու մասի։

Հայաստանը 387—450 թվականներին (60 տարուց ավելի) խաղաղություն էր վայելում, որը հազվագյուտ էր վիճակվում նրան և արտակարգ նշանակություն ունեցավ հայ ժողովրդի գոյության և հետագա զարգացման համար։ Երկիրը թևակոխել էր ֆեոդալական հասարակարգի ժամանակաշրջանը, ապրում էր բուռն վերելք կյանքի բոլոր բնագավառներում և հատկապես մշակույթի ասպարեզում։

Այս ժամանակ վերջնականապես ձևավորվեց հայկական ֆեոդալական պետականությունը։ Հայ Արշակունիների կենտրոնացված միապետական իշխանությունն իր դարն ապրել էր և այլևս չէր համապատասխանում նոր առաջ եկած արտադրական հարաբերություններին, ուստի որքան էլ նա ձգտեր հարմարվել նոր ստեղծված պայմաններին, նրա անկումը անխուսափելի էր։

428 թվականից, Արտաշես Գ թագավորի գահընկեցումով վերջ տրվեց հայ Արշակունիների դարավոր իշխանությանը, օրինականացվեց երկրում փաստորեն ստեղծված վիճակը։

Ահա այս բարդ սոցիալական և քաղաքական պայմաններում էր ընթանում Մեսրոպ Մաշտոցի (361—440 թթ.) գլխավորած լուսավորչական շարժումը։ Այդ շարժումը սուբյեկտիվորեն կոչված էր ամրապնդելու հայ նախարարների իրավունքները հավերժացնող եկեղեցու դիրքերը, սակայն օբյեկտիվորեն ծառայում էր հայ ժողովրդի ազգային ինքնագիտակցության խորացմանն ու ամրապնդմանը։

Մեսրոպ Մաշտոցը ծնվել է Հայաստանի Տարոն գավառի (Մշո դաշտի Մեղրագետի հովտում) Հացեկաց գյուղում (այժմ Հացիկ), «կարճազատ» Վարդանի ընտանիքում մոտավորապես 361 թվականին, Արշակ Բ-ի (345—367) թագավորության տարիներին։

Այդ ժամանակ Հայաստանում նախկինի պես կրթությունը հունարեն էր, չնայած նրան, որ ուսուցումը և եկեղեցական արարողությունները տարվում էին նաև ասորերեն։ Պատանի Մաշտոցը կրթությունն ստացել էր Տարոնում «հելլենական դպրությամբ»։ Ինչպես պարզվում է, Մաշտոցը բացի հունարենից, կարդում էր ասորերեն և պարսկերեն։

Հայաստանը 387 թվականին բաժանվելուց հետո մնաց հայ Արշակունիների թագավորական իշխանությունը, որը դարձել էր անվանական։ Երկրի



փաստական կառավարիչն էր պարսկական արքունիքի ներկայացուցիչը՝ հազարապետի պաշտոնով։ Արքունի դիվանում, որը գտնվում էր մայրաքաղաք Վաղարշապատում, լեզուներ իմացող քարտուղարների պահանջ կար, որտեղ իբրև զինվոր և գրագիր ծառայում էր Մեսրոպ Մաշտոցը (հավանաբար 387 թվականից հետո)։ Կորյունի ասելով «Մաշտոցը եկել, հասել էր Մեծ Հայքի Արշակունի թագավորների դուռը, կացել էր արքունի դիվանատանը՝ դառնալով արքայի տված հրամանի ծառայողը»։

Թեև Մաշտոցը «տեղյակ ու հմուտ էր աշխարհական կարգերին» և «իր զինվորական արվեստով սիրելի էր դարձել իր զորականներին», այնուամենայնիվ, նա նախընտրել էր հոգևորականի կյանքը, որն այն ժամանակ հնարավորություն էր ընձեռում զբաղվելու ժողովրդի լուսավորության գործով։ Իր քարոզչական գործունեությունն սկսում է Գողթան գավառում։ Այստեղ հեթանոսությունն արմատախիլ անելու հարցում Մաշտոցին օգնում է տեղի իշխանը՝ Շամբիթը։

Այս քարոզչական շրջագայության ժամանակ Մեսրոպ Մաշտոցն զգաց, թե որքա՜ն դժվար էր անգրագետ ժողովրդին ասորերեն լեզվով բացատրել նոր կրոնական ուսմունքը։ Մաշտոցը լավ լեզվական պատրաստություն ունենալով, «ինքն էր թե՛ կարդացողը և թե թարգմանողը, և եթե մի ուրիշն էր կարդում, երբ ինքն այնտեղ չէր լինում, ժողովրդին անհասկանալի էր մնում՝ թարգմանիչ չլինելու պատճառով»,— հիշատակում է Մ. Խորենացին։

Ահա այս պարագաներում Մաշտոցը մտածեց հայկական այբուբեն ստեղծել։ 393 թվականին նա վերադառնում է Գողթնից Արարատյան գավառ ու ներկայանում կաթողիկոս Սահակ Պարթևին, որը հավանություն է տալիս Մեսրոպի մտահղացմանը։ Այս առթիվ գումարվում է հատուկ ժողով, որից հետո որոշվում՝ «հայ ժողովրդի համար նշանագրեր հորինել»։ Այս մասին Սահակ Պարթևը և Մեսրոպ Մաշտոցը հայտնում են Վռամշապուհ թագավորին (388—414), որին հայտնի էր, որ ասորի եպիսկոպոս Դանիելի մոտ կան հայերեն նշանագրեր։ Թագավորն իր պալատականներից մեկին՝ Վահրիճին (Խադունի տոհմից) ուղարկում է նրա մոտ, որն ստանալով դանիելյան նշանագրերը, շտապ վերադառնում է Վաղարշապատ, 393 թվականին։ Այս առթիվ Մաշտոցին շնորհվեց «վարդապետ» պատվավոր աստիճանը, որն այն ժամանակ նշանակում էր գիտնական ուսուցիչ։

Սակայն երկու տարվա փորձը ցույց տվեց, որ դանիելյան նշանագրերը պակասավոր են և չեն կարող ճշտությամբ արտահայտել հայերեն լեզվի հնչյունները։ Մեսրոպ Մաշտոցի և Սահակ Պարթևի առաջ նորից իր ամբողջ լրջությամբ ծառացավ հայերեն նշանագրեր ստեղծելու խնդիրը։ Թագավորի հրամանով և Սահակ Պարթևի համաձայնությամբ Մեսրոպ Մաշտոցն իր մի խումբ աշակերտներով ճանապարհ ընկավ դեպի Ասորիք և Ամիդի վրայով հասավ Եդեսիա, որտեղ իր աշակերտներին բաժանեց՝ մի խումբը մնաց Եդեսիա ասորական դպրոցում սովորելու, իսկ մյուսը ուղարկեց Սամոսատ, կամ ավելի ճիշտ՝ Մամեստիա, հունական դպրոց[1]։

Կորյունը հիշատակում է, թե որքա՜ն ծանր ու խոր էին Մաշտոցի ապրումներն իր ժողովրդի համար ստեղծվող այբուբենն ավարտելու պահերին։ Այս

---

1 Այս երկրորդ քաղաքը Սամոսատն էր Ասորիքում, կամ Մամեստիան Կիլիկիայում. հարցը մնում է բաց, ուսումնասիրության կարոտ։

աթիվ նրա մոտ կարդում ենք, թե Մաշտոցը «...ասում էր հոգալով. «Տրտմություն է ինձ համար, և անպակաս են իմ սրտի ցավերն իմ եղբայրների և ազգակիցների համար»։ Եվ այնպես տրտմական հոգսերով պաշարված ու թակարդապատված և մտածմունքների ծփանքի մեջ էր ընկած, թե արդյոք ինչպիսի՞ ելք գտնի այդ բանի համար»։

Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ մոտավորապես 395 թվականին Մեսրոպ Մաշտոցը հորինեց հայերեն նշանագրերը, որ նկարել տվեց առանձին տախտակի վրա։

Մամեստիայում Մեսրոպ Մաշտոցն իր աշակերտներ Հովհան Եկեղեցացու և Հովսեփ Պաղնացու հետ Աստվածաշնչի գրքերից Սողոմոնի առակները սկսում է թարգմանել հայերեն, ինչպես հաղորդում է Կորյունը։ Հայերեն գրված առաջին նախադասությունն է. «Ճանաչել զիմաստութիւն և զխրատ, իմանալ զբանս հանճարոյ» («Ճանաչել իմաստությունը և խրատը, իմանալ հանճարի խոսքերը»)։

Մաշտոցն իր աշակերտներով վերադառնում է Եդեսիա, որտեղ ցույց է տալիս իր «պնակիտը» (այդպես էր կոչվում Մաշտոցի բերած նշանագրերի տախտակը), որը հավանություն է գտնում, ապա վերադառնում է հայրենիք։ Այսպես, մենք կարծում ենք, որ հայկական այբուբենի գյուտի տարեթիվը պիտի լինի մոտավորապես 395 թվականը։

Կորյունը հաղորդում է, որ նորագյուտ նշանագրերով եկող Մեսրոպ Մաշտոցին մեծ շուքով դիմավորեցին Ռահ գետի (նույն Արաքս գետն է) ափին Վռամշապուհ թագավորը, Սահակ Պարթևը և ամբողջ արքունիքը։ Գետանցը Ռահ գետի վրա, ըստ երևույթին, գտնվել է Վարդանաշատ գյուղի մոտ (այժմ Մարգարայի կամուրջի մոտերքը)։ Այստեղից մեծ հանդիսավորությամբ ուղեվորվում են դեպի Վաղարշապատ մայրաքաղաքը։

Վերադառնալով հայրենիք՝ Մեսրոպ Մաշտոցն անմիջապես անցնում է գործի։ Իր աշակերտներով սկսում է «թարգմանել և սովորեցնել»։ Ամենից առաջ հարկավոր էր ուսուցիչներ պատրաստել։ Սահակ Պարթևը և Մեսրոպ Մաշտոցը Վաղարշապատում հիմնեցին առաջին վարդապետարանը՝ բարձրագույն դպրոցը—ուսուցչարանը։

Մեսրոպ Մաշտոցի այս գործունեությունն ընթանում էր նպաստավոր քաղաքական պայմաններում։ Նոր գահ բարձրացած Արկադիոս կայսրը (395—408) իր նախորդ Թեոդոս Ա. Մեծի պես ձգտում էր չխախտել խաղաղության պայմանները Սասանյան Իրանում թագավորող Վռամ Ե. Գոռի (388—399) հետ։

Նշանակալից է, որ 410 թվականին Սելևկիայում տեղի ունեցավ եկեղեցական ժողով, որտեղ որոշում ընդունվեց իրանական և բյուզանդական եկեղեցիների միացման մասին։ Հասկանալի է, որ այս պայմաններում պարսից պետությունը չէր խանգարում Հայաստանում կուլտուրական մեծ շարժմանը, մանավանդ որ հայերը սեփական գիր ու գրականություն ունենալով, ավելի էին հեռանում հույներից։

Բյուզանդիայում Մեսրոպ Մաշտոցի լուսավորչական գործունեությունը դիտում էին իբրև Սասանյան Իրանի դեմ ուղղված քայլ։ Մայրենի գրերով ավելի հեշտ էր քրիստոնեության տարածումը, ուստի ամեն կերպ խրախուսվում էր այդ շարժումը Հայաստանում, Վրաց աշխարհում և Աղվանքում։ Վերջապես, հայ ժողովուրդը, մաքառելով Սասանյան Իրանի դեմ, պետք է դաշնակիցներ



ունենար ի դեմս վրացիների և աղվանների, իսկ այն ժամանակ այդ մերձեցման հիմնական գործոններից մեկը քրիստոնեական եկեղեցին էր։

Հայերեն նշանագրեր ստեղծելուց հետո Մեսրոպ Մաշտոցը, ինչպես ասում է Մ. Խորենացին, «բոլոր գավառներում դպրոցներ հիմնեց և պարսից բաժնի բոլոր կողմերը սովորեցրեց, բացի հունական մասից»։ Առաջին հերթին դպրոցներ բացվեցին երկրի կենտրոնում՝ Այրարատում. հայոց գիրն ու գրականությունը տարածվեց նաև արքունիքում։ Սահակ Պարթևը հատկապես հայերեն կրթություն տվեց իր թոռին՝ Վարդան Մամիկոնյանին։ Այնուհետև Մեսրոպ Մաշտոցը և Սահակ Պարթևը միմյանց միջև բաժանեցին իրենց գործունեության սահմանները։ Վերջինս գրագիտություն պետք է տարածեր Այրարատի արքունի զորակայաններում տեղավորված հայկական այրուձիի «կայենական» զորամասերում, իսկ Մեսրոպը իր Տիրայր Խորձենացի և Մուշեղ Տարոնացի աշակերտների հետ ուղևորվեց Գողթան գավառի Ոստաստակ վայրը՝ իր սկզբնական քարոզավայրերը։ Այստեղ նրան նորից օգնության են գալիս տեղի իշխան Շամբիթը և նրա որդի Գիտը։

Գողթան գավառից հետո Մեսրոպ Մաշտոցը մոտավորապես 410 թվականին ուղևորվեց հարևան Սյունյաց աշխարհը, որտեղ նույնպես դպրոցներ բացարեց։

Ակադ. Հ. Հ. Մանանդյանը իրավացի կերպով ենթադրում է, որ Մեսրոպ Մաշտոցը ուղևորվել է Կոստանդնուպոլիս Թեոդոս Բ-ի մոտ, 420—423 թթ. «երբ Հայաստանի պարսկական մասը, որն ուներ հռոմեական կողմնորոշում, աշխատել էր հավանորեն կապեր հաստատել կայսրության հետ, հույս ունենալով ազատագրվելու Պարսկաստանից»։

420 թվականի մոտերքը Մեսրոպ Մաշտոցը Սահակ Պարթևի կարգադրությամբ ուղարկվեց Բյուզանդիա «Հայոց կես ազգի համար, որ հռոմների թագավորի իշխանության տակ էր»։ Երբ Մեսրոպ Մաշտոցն իր աշակերտներով, Վարդան Մամիկոնյանի հետ միասին անցավ Բյուզանդիա, Կարին և Դերջան գավառների բնակչությունը, հոգևորականները, իշխաններն ու «գավառացիները» և, վերջապես, Անատոլիոս զորավարը մեծ խանդավառությամբ դիմավորեցին նրան։ Թեոդոս Բ կայսրը հրաման գրեց, որ Մեսրոպ Մաշտոցին մեծարեն ըստ արժանվույն և նրան շնորհեց Ակումիտ պատվավոր կոչումը, որը նշանակում է ուսուցիչ։

Ինչպես ճիշտ նշում է Մովսես Խորենացին (Գ, Կ) «անիշխանության ժամանակ» (420—423 թթ.) նորից աշխուժացել էին աղանդավորական շարժումները, ուստի Բյուզանդական Հայաստանից վերադառնալուց հետո, իր աշակերտների մի մասի հետ Մեսրոպ Մաշտոցը նորից գնաց Գողթան գավառը, որտեղ կրկին նրան օգնեց Շամբիթի որդի Գիտը, որն այն ժամանակ Գողթան գավառի իշխանն էր։

Հայ գրերի գյուտից հետո եկեղեցական գրքերի հետ մեկտեղ թարգմանվում են անտիկ աշխարհի լավագույն երկերը։ Այստեղ պետք է նշել, որ Մեսրոպ Մաշտոցը և Սահակ Պարթևը չէին կարող չմասնակցել «տիեզերական եկեղեցին» քննադատողների՝ «հերետիկոսների» դեմ ուղղված պայքարին, որն սկսել էր Բյուզանդական կայսրությունը։

Կոստանդնուպոլսից վերադարձող թարգմանիչները հայրենիքում «գտան Մեծն Սահակին և Մեսրոպին Տարոնի Աշտիշատում, հանձնեցին թղթերը և 431 թվականին տեղի ունեցած Եփեսոսի ժողովի կանոնները, սահմանված

վեց կանոն, այլև Սուրբ Գրքի ստույգ օրինակները»: Այնուհետև Սահակ Պարթևը և Մեսրոպ Մաշտոցը, «ընդունելով (Սուրբ գրքի օրինակը) նորից թարգմանեցին մի անգամ շտապովի թարգմանվածը, նրանց հետ միասին, նորից հորինելով ու նորոգելով»:

Քրիստոնեական կրոնի տարածումն ու ամրապնդումը կայսրության սահմաններից դուրս Բյուզանդիան համարում էր իր քաղաքական իշխանության ծավալման նախապայմաններից մեկը: Իսկ այդ հնարավոր էր արագացնել միայն մայրենի լեզվով քարոզելով քրիստոնեությունը, ուստի նա աջակցում էր այդ շարժմանը Հայաստանում, Վիրքում և Աղվանքում: Սասանյան Իրանը, իր հերթին, գտնում էր, որ մայրենի լեզվով գիրն ու գրականությունը Հայաստանում միայն կնպաստի հայ ժողովրդի հեռացմանը դավանակից Բյուզանդիայից, ուստի եթե չէր աջակցում այդ շարժման, համենայնդեպս, չէր էլ խանգարում:

Ահա այսպիսի նպաստավոր պայմաններում էր տեղի ունենում Մեսրոպ Մաշտոցի գլխավորած կուլտուրական մեծ շարժումը: Հայերեն գիրն ու գրականությունը ստեղծելուց հետո այս շարժման մեջ են ընդգրկվում եղբայրակից վրացիներն ու աղվանները, որոնք նույնպես հոգ տարան իրենց նշանագրերն ունենալու. հնարվեցին վրաց և աղվանից գրերը:

Սասանյան Իրանը շատ ուշ հասկացավ, որ հայերի, վրացիների և աղվանների այս մեծ շարժումը, ճիշտ է, նպաստում էր նրանց հեռացմանը դավանակից Բյուզանդիայից, բայց, առաջին հերթին, սատարում էր այդ ժողովուրդների ինքնագիտակցության զարգացմանն ու հակապարսկական տրամադրությունների ուժեղացմանը: Հազկերտ Բ-ի (439—457) գահ բարձրանալուն պես սկսվեց նոր քաղաքականություն, որի հիմնական նպատակն էր ոչնչացնել հայերի, վրացիների ու աղվանների ինքնուրույնությունը և հող պատրաստել նրանց ձուլման համար:

Սակայն այդ քաղաքականությունը դատապարտված էր անհաջողության: Հետագա դեպքերը ցույց տվին, որ Իրանն իր հետամնաց սոցիալ-տնտեսական կառուցվածքով այնպես էր լճացել, որ հեշտությամբ կուլ գնաց արաբական նվաճողներին, ենթարկվելով խալիֆայությունից եկող «մուսուլմանական» կուլտուրային և կորցրեց իր ազգային դեմքը: Նույնիսկ մոռացության տվեց պահլավերեն գիրը և ընդունվեց արաբերեն այբուբենը, որն ավելի հեշտ չէր, քան թե նախորդը:

Հայերեն տառերը, լինելով ավելի կատարելագործված, հիմք հանդիսացան հայ դրականության զարգացման, որը մեծ վերելք ապրեց դեռևս Մեսրոպ Մաշտոցի կենդանության ժամանակ: Այս հանգամանքը մի պերճախոս վկայություն է այն մասին, թե որքա՞ն կենսունակ էր Մեսրոպ Մաշտոցի կողմից գլխավորած շարժումը: Այն անհաղթահարելի էր, որովհետև պրոգրեսիվ էր. իսկ ինչ պրոգրեսիվ է, ժողովրդական է:

Հետաքրքրական է, որ ժամանակակիցները գիտակցում էին Մեսրոպ Մաշտոցի գլխավորած շարժման նշանակությունը. գիրն ու գրականությունը և մի ընդհանուր գրական լեզվի գոյությունը պետք է վերացնեին այն ժամանակ եղած բազմաթիվ բարբառները և պետք է նպաստեին հայ ժողովրդի տարբեր հատվածների զոդման պրոցեսի խորացմանը, որն այդպես ցայտուն կերպով արտահայտվեց 450—451 թթ. պարսկական գերիշխանության դեմ մղված ժողովրդա-ազատագրական մեծ պայքարի ժամանակ:



Այս ամենի լույսի տակ, հարկավ, ավելի ցայտուն կերպով է դրսևորվում հայերի, վրացիների և աղվանների համատեղ պայքարը Սասանյան Իրանի և Բյուզանդիայի դեմ V—VII դարերում: Այդ ժամանակվա նոր հանդես եկած պրոգրեսիվ դասակարգերի պայքարն էր դա իր դարն ապրած ստրկատիրական արտադրական հարաբերությունների սիստեմի դեմ: Ահա այդ պայքարն էր գլխավորում Մեսրոպ Մաշտոցը, որը պատկանում է ո՛չ միայն հայ ժողովրդին, այլև ամբողջ առաջադեմ մարդկությանը:

Բնորոշ է, որ այս տասնվեց դարերի ընթացքում ոչ մի անգամ Մեսրոպ Մաշտոցը այնպիսի բարձր գնահատականի և դրվատանքի չի արժանացել, ինչպես մեր օրերում և կոմունիզմ կառուցող հասարակարգի պայմաններում: Քառասուն տարի առաջ, հայ ժողովուրդը, ի դեմս Հայկական ՍՍՌ-ի, ստեղծելով իր նոր պետականությունը, այնպիսի վերելք ապրեց կյանքի բոլոր բնագավառներում, որ աննախընթաց էր և գերազանցեց այն բուռն թռիչքը, որ կատարեց հայ ժողովուրդը IV—V դարերի շեմքին:

Այժմ արդեն անվիճելի է, որ Մեսրոպ Մաշտոցը սոսկ տառերի գյուտարար չի եղել. նա հիմնադիրն է հայ գրականության՝ արձակի և չափածոյի և հայկական երաժշտության: Մեզ հասած նրա բանաստեղծական քերթվածքների մեջ դրսևորվում է մեծ քաղաքացին և հումանիստը: Նրան առաջին հերթին հետաքրքրում էր իր ժողովուրդը, իր հայրենիքը, նրա վիճակը: Նրա հոգսերի հոգսը այլ ժողովուրդների հետ խաղաղ ապրելն էր և հարազատ ժողովրդին նեղությունից ազատելը:

Դարեր ի վեր աննկուն մաքառելով հայրենի և օտար կեղեքիչների դեմ, տաղանդավոր հայ ժողովուրդը Հոկտեմբերյան փրկարար արևածագին ընդառաջ ելավ հոգևոր մշակույթի իր անմար ջահերով, ջահեր, որոնք հար լուսավորել են նրա անագորույն պատմաերթի ահարկու կեռմանները: Սակայն այդ ջահերը բոցկլտացել են հայ շինականի քամած ձեթով և մեսրոպյան մտքի անշեջ հրով:

Հիրավի, ստեղծարար և խաղաղարարգ մեր ժողովուրդը, որն ըմբոշխնել լենինյան վառ արևի պարգևած բարիքները, այսօր հպարտությամբ և վեհացնող զգացումով է մեծարում երախտավոր յուր ռահվիրային՝ Մեսրոպ Մաշտոցին: Տեր կանգնելով այն ամենին, ինչ օգտակար է եղել իր սեփական ազատագրական ընդվզումներին և արդար ոգորումներին՝ հայ ժողովուրդը խորապես գիտակցում է այն բախտորոշ ճշմարտությունը, որ իր զարգացման սովետական բարձունքին հասնելով միայն կարողացավ կերտել երջանիկ կյանք, սոցիալիստական հանրակարգ: Իր նորոգ Հայրենիքի՝ կոմունիզմի շեմին կեցած, այսօր Հայաստանի աշխատավորությունը մեծ երախտագիտությամբ է դրվատում իր կուլտուրայի ջահաբարձին և դուրս բերելով նրան վանական նեղ խցիկից, ջերմ ակնածանքով հանձնում է նրան սովետական եղբայրական ժողովուրդների գուրգուրանքին:

Տարիների տքնանքով հորինելով, մշակելով և կիրառելով մեր նշանագրերը, զարգացնելով սոցիալական պրոգրեսի անփոխարինելի զենքը, մեր հուրհրատող լեզուն, Մաշտոցը ռեալ հնարավորություն ընձեռեց հայ ժողովրդին համաշխարհային կուլտուրայի գանձարանը մուծել իր հանճարի գոհարները: Իմաստուն Խորենացին, թե ոսկեբառ Եղնիկը, քնարերգակ Նարեկացին, թե ըմբոստ Ֆրիկը, սիրատոչոր Սայաթ-Նովան, թե ազատության մրրկահավ Միքայել Նալբանդյանը, լոռեցի Հովհաննես Թումանյանը, թե նոր պոե-



2 Լենինյան ուղիով, № 5

գիայի արծիվ Չարենցը, Լենինի հավատարիմ զինակից Ստեփան Շահումյանը ու Հայաստանի կոմունիստների փառավոր սերունդը՝ հայ ժողովրդի բարօրության ու պրոգրեսին ծառայել են մեսրոպյան լեզվի անմիջական օգնությամբ։

Հանրահայտ է, որ տակավին անցյալ դարի վերջերից հայ աշխատավորությունն այդ լեզվով է ընկալել «Կոմունիստական մանիֆեստի», Մարքսի, Էնգելսի ու Լենինի Երկերի մեծ գաղափարները, երկեր, որոնք միլիոնավոր օրինակներով դարձել են նրա սեփականությունը։ Եվ այսօր, երբ մեր ժողովուրդը եղբայրական ժողովուրդների հետ միասին մեծ շուքով տոնում է Մաշտոցի ծննդյան 1600-ամյակը, պատշաճ է շեշտել, թե Սովետական իշխանության տարիներին որպիսի՜ բուռն ծաղկում է ապրել սովետահայ կուլտուրան և մեր հարուստ, ուժգին, ճկուն լեզուն, մի լեզու, որը մարմնավորելով իր մեջ լենինյան դարի լեզվական կուլտուրայի հարուստ պաշարը, սքանչելիորեն ծառայում է մեզ՝ կոմունիզմի կառուցման գործին։

Ուրեմն թո՛ղ ավելի ծաղկի ու փարթամանա ժողովուրդների եղբայրությանն ու խաղաղությանը ծառայող, ստեղծագործական խոյանքների՝ մեր հայոց լեզուն։

Թո՛ղ հավերժ անթառամ մնա մեր ժողովրդի կուլտուրայի ռահվիրայի՝ Մեսրոպ Մաշտոցի հիշատակը։

Մեսրոպ Մաշտոցը վախճանվեց 440 թվականի փետրվարի 17-ին, Վաղարշապատում, «գերազանցելով բոլոր առաքինի մարդկանցից, որպիսիք այն ժամանակ կային»։ Վաղարշապատից նրա մարմինը փոխադրեցին Օշական և թաղեցին նրա համար կառուցված մատուռում։

Այսօր, նրա ծննդյան 1600-ամյակը նշելով, մենք չենք կարող այդ նվիրական անունը հիշել առանց խոր ակնածանքի և հարգանքի։ Ժամանակը ցույց տվեց, որ նրա գործն անմահ է։

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՄԱՍՆԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՏԵՄՊԵՐԸ 1961—1980 ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ

Հ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

Գիտության վաստակավոր գործիչ, պրոֆեսոր

Հայաստանի ժողովրդական տնտեսության զարգացման տեմպերի և համամասնությունների վերլուծությունը ցույց է տալիս, որ սոցիալիստական շինարարության տարիներին ամբողջ տնտեսությունը զարգացել է շատ արագ, որի շնորհիվ ստեղծվել են սոցիալիստական էկոնոմիկայի բարձր մակարդակ և ժողովրդական տնտեսության նոր կառուցվածք։

Լենինյան ազգային քաղաքականության հետևողական կիրառման շնորհիվ արդյունաբերության զարգացման տեմպերը Հայկական ՍՍՌ-ում միշտ էլ գերազանցել են ՍՍՌՄ արդյունաբերության զարգացման միջին տեմպերը. այդ է ցույց տալիս բերված աղյուսակը.

Այդ բանն առավել ցայտուն դարձավ հետպատերազմյան տարիներին։

Սոցիալիստական շինարարության անցած տարիներին արտադրողական ուժերի ռացիոնալ տեղաբաշխման շնորհիվ Հայկական ՍՍՌ-ն ոչ միայն ագրարայինից դարձավ առաջավոր արդյունաբերական երկիր, այլև իր ինդուստրացման մակարդակով՝ ՍՍՌՄ տնտեսական կարևոր շրջաններից մեկը՝ ժամանակակից ինդուստրիայի գլխավոր ճյուղերով։

Արդյունաբերության համախառն արտադրանքի աճման տեմպերը 1913 թվականի համեմատությամբ

| | ՍՍՌՄ | ՀՍՍՌ |
|---|---|---|
| 1940 թվական | 8,5 | 8,7 |
| 1950 » | 14,7 | 22 |
| 1955 » | 27,4 | 41 |
| 1958 » | 36,6 | 55 |
| 1960 » | 45 | 68 |

Ինդուստրիալ երկրները բնորոշող արդյունաբերության գլխավոր ճյուղերից՝ Հայկական ՍՍՌ-ում ներկայումս բացակայում են միայն վառելիքի արդյունաբերությունը և լայն մասշտաբներով կազմակերպված սև մետաղաձուլությունը. արդյունաբերության մյուս ճյուղերը գոյություն ունեն Հայկական ՍՍՌ-ում և գտնվում են ժամանակակից տեխնիկական մակարդակի վրա։

Այժմ, երբ ՍՍՌՄ-ն ապրում է իր զարգացման նոր, կոմունիզմի ծավալուն շինարարության էտապը, կարևոր նշանակություն է ստանում կապիտալիզմի հետ խաղաղ մրցության մեջ ժամանակ շահելը. զարգացման բարձր տեմպերը պետք է մնան որպես սոցիալիստական էկոնոմիկայի կարևոր օրինաչափություններից մեկը, ՍՍՌՄ գլխավոր տնտեսական խնդիրը լուծելու

կարևոր գրավականը։ ՍՍՌՄ արդյունաբերության արտադրանքը 1961—1980 թվականներին կավելանա 6,2—6,4 անգամ։ Պարտիայի նոր Ծրագրում նշված է, որ արդյունաբերության զարգացման տեմպերով ազգային ռեսպուբլիկաների էկոնոմիկան պետք է գերազանցի ՍՍՌՄ-ի միջին տեմպերը։ Այս նկատի ունի սովետական բոլոր ազգերի և ազգությունների էկոնոմիկայի և կուլտուրայի համակողմանի զարգացումը։ Պարտիան ազգային հարաբերությունների ասպարեզում առաջ է քաշում հետևյալ խնդիրները.

Տնտեսական ասպարեզում այսուհետև ևս վարել սովետական ռեսպուբլիկաների տնտեսության համակողմանի զարգացման գիծ, ապահովել արտադրության ռացիոնալ տեղաբաշխման և բնական հարստությունների պլանաչափ շահագործում... Պարտիան առաջվա պես կվարի բոլոր ազգերի, ազգությունների փաստական հավասարությունն ապահովող քաղաքականություն՝ լիովին հաշվի առնելով նրանց շահերը, առանձնահատուկ ուշադրություն նվիրելով երկրի այն շրջաններին, որոնք ավելի արագ զարգացման կարիք ունեն» (ՍՄԿՊ Ծրագիր, էջ 136—137)։

Որքան շատ կապիտալ ներդրումներ կատարվեն ռեսպուբլիկաների ժողովրդական տնտեսության մեջ, այնքան ավելի արագ կզարգանա նրանց էկոնոմիկան ու կուլտուրան։ Այսպես, սոցիալիստական շինարարության անցած տարիներին Հայաստանի ժողովրդական տնտեսության կապիտալ ներդրումները տարեցտարի, հնգամյակ առ հնգամյակ աճել են ՍՍՌՄ միջինից գերազանցող տեմպերով. դրանք բարձր են եղել, մասնավորապես, հետպատերազմյան տարիներին։ Միայն չորրորդ հնգամյակում կատարված ներդրումների գումարը հավասար էր նախապատերազմյան երեք հնգամյակներում ներդրվածին։ 1960 թվականին Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ կատարված ներդրումների գումարը (համեմատելի գներով) ավելի մեծ էր, քան նախապատերազմյան առաջին և երկրորդ հնգամյակներինը միասին վերցրած ու գրեթե հավասար և՛ երկրորդ, և՛ երրորդ հնգամյակների տարիներին կատարված ներդրումների գումարին։ ՍՄԿՊ Ծրագրի պահանջներին համապատասխան 1961—1980 թվականներին Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումները կկազմեն 18 միլիարդ ռուբլի (գների նոր մասշտաբով)։

Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումների աճի տեմպերի մասին գաղափար կազմելու համար բերենք հետևյալ տվյալները. 1921—1940 թվականներին ներդրումների գումարը կազմեց 277,1 միլիոն ռուբլի (գների նոր մասշտաբով), հաջորդ քսանամյակում՝ 4669,2 միլիոն ռուբլի, կամ նախորդի համեմատությամբ 17 անգամ ավելի։ Իսկ եթե 1961—1980 թվականներին կատարվելիք ներդրումների գումարը համեմատենք նախորդ քսանամյակների ներդրումների հետ, ապա 1921—1960 թվականների համեմատությամբ այն ավելի կլինի 65 անգամ, 1940—1961 թվականների համեմատությամբ՝ ավելի քան չորս անգամ։ Գալիք քսան տարիներին Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ կատարվելիք կապիտալ ներդրումների գումարը 3,6 անգամ շատ կլինի, քան սոցիալիստական շինարարության անցած 40 տարիներինը։

1961—1980 թվականներին Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումները (մեկ շնչի հաշվով) զգալի չափով գերազանցելու են Միության միջին ներդրումները։



Կապիտալ ներդրումների տեմպերի աճման հետ միասին դրանք պետք է առավել արդյունավետ օգտագործվեն, ապահովելու համար ռեսպուբլիկայի ակտիվ մասնակցությունը մեր երկրում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործին։

Ըստ ՍՄԿՊ Ծրագրի յուրաքանչյուր ռեսպուբլիկայում տեղական նշանակություն ունեցող խնդիրների լուծման հետ միասին առաջնային տեղ պետք է տրվի արդյունաբերության և ժողովրդական տնտեսության համապետական նշանակություն ունեցող ճյուղերին, որոնց զարգացման տեմպերը պետք է գերազանցեն ռեսպուբլիկայի տնտեսության զարգացման միջին տեմպերը։

Ռեսպուբլիկան ունի և ունենալու է խիտ բնակչություն. ուստի Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման տեմպերը և համամասնությունները որոշելիս նկատի է առնվում նաև աշխատունակ բնակչության համար լրիվ զբաղվածություն ապահովելու հարցը։

***

Հաշվարկումները ցույց են տալիս, որ Հայաստանի արդյունաբերության աճի տարեկան միջին տեմպը հետպատերազմյան տարիներին կազմել է մոտավորապես 15 տոկոս։ 1959—1965 թվականների յոթնամյա պլանով նախատեսված է արդյունաբերական արտադրանքի միջին տարեկան աճը հասցնել 12,7 տոկոսի։ Աճման այդ տեմպը ավելի քան ռեալ է։ Հայկական ՍՍՌ Պետպլանը գլխավոր հեռանկարի ժամանակամիջոցի համար սահմանել է արդյունաբերության արտադրանքի 13,7 տոկոս միջին տարեկան աճ։ Այսպիսով, Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքը 20 տարվա ընթացքում, այսինքն՝ 1980 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, կավելանա 13 անգամ։ 1980 թվականին Հայաստանի արդյունաբերության արտադրանքի աճը մեկ շնչի հաշվով, 1960 թվականի համեմատությամբ, կավելանա 6,5 անգամ։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման ժամանակաշրջանում բացառիկ կարևորություն է ստանում ժողովրդական տնտեսության էներգետիկ բազայի հետագա ընդլայնումը։ Այդ ժամանակաշրջանը նշանավորվելու է ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության համատարած էլեկտրիֆիկացմամբ։ Էլեկտրաէներգիան մասսայաբար կիրառվելու է գյուղատնտեսության մեջ, տրանսպորտում և կենցաղում։

1961—1980 թվականներին Հայաստանում էլեկտրաէներգիայի արտադրությունը կավելանա 13,7 անգամ, այն կհասնի մոտ 38 միլիարդ կիլովատ-ժամի։

Ի՞նչ ուղղությամբ է զարգանալու Հայաստանի էներգետիկ տնտեսությունը և ի՞նչ աղբյուրներից է սնվելու այն։ Հայտնի է, որ մինչև այսօր Հայաստանի էներգետիկ տնտեսությունը խարսխված է Սևան—Հրազդան կասկադի հիդրոէլեկտրակայանների վրա։ Դրա հետևանքով հետզհետե իջնում էր ռեսպուբլիկայի միակ խոշոր ջրավազանի ջրի մակարդակը և կրճատվում մակերեսը։ Որոշվեց կրճատել Սևանա լճից ջրի բացթողումը և այն հասցնել այնպիսի չափերի, որն անհրաժեշտ է ոռոգման համար։ Նախատեսվեց կառուցել բնական գազով աշխատող մի քանի խոշոր էլեկտրակայաններ՝ Երևանում, Հրազդանում, ավելի ուշ՝ նաև Կիրովականում ու Լենինականում։

Բայց այդ չի նշանակում, թե ռեսպուբլիկայում այսուհետև նոր հիդրոէլեկտրակայաններ չեն կառուցվելու։ Այդպիսիք կառուցվելու են հատկապես Զանգեզուրում։

Արդեն յոթնամյակի տարիներին սկսվեց Որոտան կասկադի երրորդ աստիճանի՝ Տաթևի հիդրոկայանի շինարարությունը։ Ավելի ուշ կկառուցվեն նաև Որոտանի կասկադի մյուս աստիճանները, օրինակ՝ Սպանդարյանինը և Շամբինը։ 1961—1980 թթ. կսկսվի նաև Դեբետ գետի ջրային ռեսուրսների օգտագործումը։ Նրա վրա նախագծվում է կառուցել 3 հիդրոէլեկտրակայան։

Այսպիսով, 1960—1980 թվականներին արմատապես կփոխվեն ռեսպուբլիկայի էներգետիկ տնտեսության աղբյուրները։

Նոր կառուցվող ջերմաէլեկտրակայանները տարեկան կթողարկեն ավելի քան 34 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, որը հիդրոէլեկտրակայանների թողարկած մոտ 4 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի հետ միասին կապահովի ռեսպուբլիկայի էլեկտրաէներգիայի պահանջները։

Հայտնի է, որ Հայկական ՍՍՌ-ն մինչև օրս չի ունեցել լայն մասշտաբի սև մետաղաձուլություն։ Այն ստեղծվելու է գլխավոր հեռանկարի (1961—1980 թթ.) ժամանակամիջոցում։ Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության կոմպլեքսային զարգացումը պահանջում է ստեղծել սև մետաղաձուլություն, մանավանդ, որ արդյունաբերության այդ ճյուղի զարգացման համար առկա են տեխնիկա-տնտեսական բոլոր անհրաժեշտ պայմանները։ Այդ պայմաններից են երկաթահանքի հայտնաբերումը ռեսպուբլիկայում և, բացի դրանից, ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ գոյացող մեծ քանակությամբ մետաղի ջարդվածքը, որը նույնպես նպաստում է մետաղաձուլության կազմակերպմանը։

Սև մետաղաձուլության ստեղծման շնորհիվ վերջ կտրվեն այդ բնագավառում մինչև այժմ կատարվող հեռավոր փոխադրումներին, կիջնի մեքենաշինական արտադրանքի ինքնարժեքը, կվերանան մետաղի մատակարարումների հետ կապված շատ դժվարություններ։

Գունավոր մետաղաձուլությունը, հանդիսանալով ռեսպուբլիկայի արդյունաբերության հնագույն ճյուղերից մեկը, մեծապես կզարգանա առաջիկա 20 տարում։ Արդյունաբերության այս ճյուղի համախառն արտադրանքը, ինչպես գոյություն ունեցող ձեռնարկությունների ընդլայնման, այնպես էլ նորերի կառուցման հաշվին մեծ չափերով կավելանա։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում կարևոր դեր է խաղում քիմիան, մասնավորապես սինթետիկ նյութերի արտադրությունը։ Քիմիական արդյունաբերության համախառն արտադրանքը 1980 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, կավելանա մոտավորապես 30 անգամ։

Աննախընթաց վերելք կապրի Հայաստանի մեքենաշինական արդյունաբերությունը։ Այն ժամանակ, երբ ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերության արտադրանքը կավելանա 13 անգամ, մեքենաշինական արդյունաբերության արտադրանքը կավելանա 48 անգամ։ Հայաստանի մեքենաշինական արդյունաբերության մեջ այժմ մեծ տեսակարար կշիռ ունի էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը։ Հեռանկարային ժամկետի վերջում Հայաստանը կդառնա էլեկտրաշարժիչներ և, հատկապես, միկրոէլեկտրաշարժիչներ արտադրող կարևոր տնտեսական շրջաններից մեկը Միությունում։

Ժողովրդական տնտեսության և, առաջին հերթին, արդյունաբերության



ավտոմատացման նպատակով կզարգանա սարքաշինությունը և ավտոմատացման միջոցների արտադրությունը, մասնավորապես էլեկտրոնային հաշվիչ մեքենաների արտադրությունը։ Մեքենաշինական արդյունաբերության այս ճյուղի արտադրանքի թողարկումը 1980 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, կավելանա 85 անգամ։

Մանր արդյունաբերության ճյուղերից բարձր տեմպերով առաջ կընթանա շինանյութերի արտադրությունը։

Առաջիկա քսանամյակում լայնորեն կզարգանա Հայաստանի թեթև և սննդի արդյունաբերությունը։ Սննդարդյունաբերության արտադրանքը կավելանա ավելի քան 5 անգամ, որը հնարավորություն կտա լիովին ապահովելու բնակչության պահանջմունքները։ 1980 թվականին թեթև արդյունաբերության արտադրանքի կարևոր տեսակներից կթողարկվեն բամբակե գործվածքներ՝ 168,5 միլիոն մետր, բրդյա գործվածքներ՝ 9,5, մետաքսյա գործվածքներ՝ 120 միլիոն մետր, 11,4 միլիոն զույգ կոշիկ և այլն։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար բավական չէ միայն արդյունաբերության զարգացումը. անհրաժեշտ է նյութական արտադրության բոլոր ճյուղերի, ինչպես և սոցիալիստական գյուղատնտեսության աննախընթաց վերելք։ Պարտիայի նոր Ծրագիրը գյուղատնտեսության առջև խնդիր է դնում երկրում ստեղծել պարենի և գյուղատնտեսական հումքի առատություն։ Դրան համապատասխան, ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման գլխավոր հեռանկարների իրականացման ժամանակամիջոցում գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելանալու է. հացահատիկինը՝ 2,2 անգամ, մսինը՝ 3,7, կաթինը՝ 3, ձվինը՝ ավելի քան 4, բրդինը՝ 3,2, բամբակինը՝ 2,6, շաքարի ճակնդեղինը՝ ավելի քան 10 անգամ։ ՍՍՌՄ-ում գյուղատնտեսական մթերքների արտադրության այդպիսի աճը հնարավոր կլինի, եթե միութենական ռեսպուբլիկաներից յուրաքանչյուրն իր ունեցած արտադրական, նյութական ու աշխատանքային հնարավորությունները մոբիլիզացնի, լիովին օգտագործի ռեսպուբլիկայի հողակլիմայական պայմանները և կազմակերպի ինտենսիվ գյուղատնտեսական արտադրություն։ Դրա հետ միասին գյուղատնտեսական մթերքների տարբեր տեսակների արտադրության չափերը յուրաքանչյուր ռեսպուբլիկայում կորոշվեն նրա գյուղատնտեսական մասնագիտացմամբ։ Հողային ֆոնդի լրիվ օգտագործումը պայմանավորված է գյուղատնտեսական նոր օբյեկտների ստեղծմամբ ու դրա հիման վրա, ջրարբի հողերի մաքսիմալ ավելացմամբ։ Հաշվի առնելով տվյալ հողակլիմայական պայմաններում տնտեսության արդյունավետ զարգացման հնարավորությունը, Հայկական ՍՍՌ-ի գյուղատնտեսության բոլոր ճյուղերի մեջ առավել հեռանկարային ճյուղերը լինելու են խաղողագործությունը և պտղաբուծությունը։ 1960 թվականին խաղողի այգիների տարածությունը 31 հազար հեկտար էր, որից բերքատու՝ 17 հազարը։ Պտղատու այգիների ընդհանուր տարածությունը՝ 28 հազար հեկտար, որից 13,3 հազարը բերքատու։

Գլխավոր հեռանկարային պլանի իրականացման շրջանում ռեսպուբլիկայում նախատեսվող ջրատնտեսական աշխատանքների իրականացման շնորհիվ նոր ոռոգելի հողերի ընդհանուր տարածությունից 100 հազար հեկտարը հատկացնելով խաղողագործությանն ու պտղաբուծությանը, 1980 թվականին բազմամյա տնկարքների տարածությունները կհասնեն 160 հազար հեկտարի։

Հեռանկարային ժամանակամիջոցում տեղի կունենա գյուղատնտեսության

այդ ճյուղի հետագա մեքենայացում. ագրոտեխնիկական կոմպլեքսի լրիվ կիրառմամբ խաղողի մեկ հեկտարի բերքատվությունը կարելի է հասցնել 120—130, պտուղներինը՝ 99—100 ցենտների: Այդպիսով խաղողի համախառն բերքը 1980 թվականին կկազմի 9360 հազար, պտուղներինը՝ 4800 հազար ցենտներ: Այդ նշանակում է, որ խաղողի համախառն բերքը 1980 թ., 1960 թ. համեմատությամբ, կավելանա ավելի քան 11, իսկ պտուղներինը՝ 10 անգամ:

Խաղողագործության և պտղաբուծության բուռն զարգացման հետ մեկտեղ կընդարձակվեն և ծխախոտի, շաքարի ճակնդեղի ցանքատարածությունները: 1980 թ. շաքարի ճակնդեղի համախառն բերքը կավելանա 2,5 անգամ:

Հայաստանի գյուղատնտեսության հեռանկարային ճյուղերից է անասնապահությունը, որի հետագա զարգացման ու մթերատվության բարձրացման համար խոշոր չափով ընդարձակվելու է կերի բազան: Դա գլխավորապես տեղի կունենա եգիպտացորենի, ճակնդեղի, հատիկաֆուրաժային և կերային մյուս արժեքավոր կուլտուրաների ցանքատարածությունների ավելացման ու բերքատվության բարձրացման, ինչպես նաև բնական խոտհարքների և արոտավայրերի ընդարձակման ու ռացիոնալ օգտագործման միջոցով:

Ռեսպուբլիկայում անասնապահական մթերքների արտադրությունը 1980 թվականին, 1960 թվականի համեմատությամբ կավելանա. մսինը՝ 3,1, կաթինը՝ մոտ 3, բրդինը՝ 2,3, ձվինը՝ ավելի քան 5 անգամ: Այդպիսով, զգալի չափով կավելանա բնակչության ապահովվածությունը անասնաբուծական մթերքներով, սակայն դեռևս չի բավարարի քաղաքային բնակչության աճող վճարունակ պահանջը, այդ պակասը մասամբ կլրացվի բերովի մթերքով:

1961—1980 թվականներին արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման աննախընթաց մասշտաբների, ծավալվող հսկայական կապիտալ շինարարությանը համապատասխան, անհրաժեշտ է զարգացնել տրանսպորտը: Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքը սոցիալիստական շինարարության տարիներին ավելացել է մոտ 70 անգամ, մինչդեռ շահագործվող երկաթուղիների երկարությունը նույնիսկ չի կրկնապատկվել: Հենց Հայաստանում կառուցված երկաթուղիները ցույց են տալիս, թե ինչպիսի կարևոր տնտեսական նշանակություն ունեն դրանք տնտեսական ու կուլտուրական զարգացման գործում: Այսպես՝ առանց Լենինական—Արթիկ—Պեմզաշեն երկաթուղային ճյուղի հազիվ թե հնարավոր լիներ մեծ ծավալով շահագործել Արթիկի և նրա շրջակայքի շինարարական քարը: Առանց երկաթուղու Արթիկը կմնար մի գյուղ: Մինչդեռ կարճ ժամանակամիջոցում այն դարձավ ոչ միայն շինանյութեր արտադրող կարևոր կենտրոն, այլև բարեկարգ քաղաք: Եթե ժամանակին չկառուցվեր Ղափան—Մինջևան երկաթուղին, անհնար կլիներ Զանգեզուրի լեռնամետալուրգիական արդյունաբերության այդպիսի զարգացումը: Բանն այն է, որ այժմ Հայաստանի երկաթուղային տրանսպորտն աշխատում է չափազանց լարված: Դրա հետ միասին գոյություն ունեցող երկաթուղիներն այնպես են բաշխված, որ ռեսպուբլիկայի շատ շրջաններ ու քաղաքներ միմյանց հետ կապված չեն երկաթուղով: Ճիշտ է, ռեսպուբլիկայում գոյություն ունի ավտոտրանսպորտային լայն ցանց, բայց այն չի կարող փոխարինել երկաթուղուն:

Տնտեսական ու կուլտուրական զարգացման հեռանկարներին համապատասխան 1961—1980 թվականները Հայաստանում պետք է լինեն նաև երկաթուղային լայն շինարարության տարիներ: Այդ շինարարության առաջին կարևոր օբյեկտը կհանդիսանա Հրազդան—Աղստաֆա երկաթուղին: Երևան—Սե-



վան—Աղստաֆա երկաթուղու շինարարությունը տնտեսապես հիմնավորված էր դեռևս նախապատերազմյան տարիներին: Դրանից հետո կատարված տնտեսական խոշոր տեղաշարժերը և ռեսպուբլիկայի տնտեսական զարգացման հեռանկարները պահանջում են կարճ ժամանակամիջոցում ավարտել Երևան—Հրազդան—Աղստաֆա երկաթուղու Հրազդան—Աղստաֆա տեղամասը, ապա ձեռնամուխ լինել Հրազդան—Կիրովական երկաթուղու նոր ճյուղի կառուցմանը: Սևանի ավազանում և հարակից շրջաններում 1961—1980 թվականներին կատարվելու են մեծ մասշտաբի շինարարական աշխատանքներ և յուրացվելու են այդ վայրերում արդեն հայտնաբերված բնական հարստությունները. այդ իսկ պատճառով անհրաժեշտ է կառուցել Սևան—Կամո—Մարտունի—Բասարգեչար երկաթուղագիծը:

Նյութական արտադրության ճյուղերի զարգացման տարբեր տեմպերի հետևանքով էական փոփոխության կենթարկվեն մինչև այժմ գոյություն ունեցող համամասնությունները. կստեղծվեն կոմունիզմի նյութատեխնիկական բազայի առկայությունը բնութագրող համամասնություններ: Նախ՝ կփոփոխվեն արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերի միջև գոյություն ունեցող համամասնությունները: 1980 թվականին Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ կբարձրանա «Ա» խմբի տեսակարար կշիռը, հասնելով 72 տոկոսի: Սակայն այդ չի նշանակում, թե դրանից կտուժի «Բ» խումբը: «Բ» խմբի տեսակարար կշիռը հարաբերականորեն իջնելու պայմաններում ժողովրդական սպառման առարկաներ արտադրող արդյունաբերության ճյուղերի արտադրանքը մեկ շնչի հաշվով կավելանա 2,5—3 անգամ:

1980 թվականի մեքենաշինական և մետաղամշակման արդյունաբերության տեսակարար կշիռը կկազմի ծանր արդյունաբերության բոլոր ճյուղերի համախառն արտադրանքի գրեթե կեսը, իսկ գունավոր մետալուրգիան, քիմիական արդյունաբերությունը, շինանյութերի արտադրությունը և ծանր արդյունաբերության մյուս ճյուղերը միասին վերցրած կթողարկեն արտադրանքի կեսից մի փոքր ավելին: Թեթև ու սննդի արդյունաբերության արտադրանքի տեսակարար կշիռը կկազմի ամբողջ արդյունաբերության արտադրանքի մոտավորապես 28 տոկոսը:

***

Ծավալուն կոմունիստական շինարարության շրջանը թևակոխելու և կոմունիզմի նյութատեխնիկական բազա ստեղծելու առնչությամբ առանձնակի հետաքրքրություն են ներկայացնում բնակչության աճի տեմպերը, բնակչության բաշխվածությունն ըստ քաղաքի և գյուղի, նրա պրոֆեսիոնալ կազմի և կենսամակարդակի բարձրացման հարցերը:

Հայկական ՍՍՌ-ի բնակչության աճման օրինաչափությունների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ սոցիալիստական արտադրահարաբերությունների հաստատումից հետո երկրում խիստ պակասեցին հիվանդություններն ու մահացությունը. ավելացավ ծնունդը և դրա հիման վրա բարձրացավ բնական աճի տեմպերը: Ներկայումս Հայաստանը բնակչության աճի տեմպերով զգալի չափով գերազանցում է կապիտալիստական առավել զարգացած երկրներին: Հայաստանի բնակչության յուրաքանչյուր 1000 շնչին հասնում է 37,3 ծնունդ և 8,3 մահացություն, բնական աճը կազմում է 2,9 տոկոս:

Հայկական ՍՍՌ Պետպլանի հաշվարկումներով 20 տարվա ընթացքում Հա-

յաստանի բնակչությունը կհասնի 3,4 միլիոն մարդու, ներառյալ նաև մեխանիկական աճը (հայրենադարձությունը)։ Նույն ժամանակամիջոցում կավելանա ռեսպուբլիկայի աշխատունակ բնակչությունը և 1980 թվականին կհավասարվի ռեսպուբլիկայի 1959 թվականին ունեցած բնակչության թվին։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման պրոցեսում ոչ միայն կավելանա բնակչության թիվը, այլև տեխնիկական առաջադիմության շնորհիվ արմատական փոփոխություններ տեղի կունենան ռեսպուբլիկայի բնակչության բաշխվածության մեջ (ըստ քաղաքի և գյուղի, ըստ զբաղմունքի և ըստ կուլտուրական մակարդակի)։

Աստիճանաբար կվերանան քաղաքի և գյուղի միջև գոյություն ունեցող էական տարբերությունները. գյուղն իր սոցիալ-տնտեսական, կենցաղային և կուլտուրական մակարդակով կհասնի քաղաքին։ Բացի դրանից, այժմյան գյուղերի մի մասն անխուսափելիորեն վերածվելու է քաղաքների, դրանց բնակչությունն էլ՝ քաղաքային բնակչության։ Այսպիսով, քաղաքային բնակչության տեսակարար կշիռը ամբողջ բնակչության մեջ գնալով բարձրանալու է։ Զարգացման այդ ընդհանուր տենդենցն առավել շեշտված կդրսևորվի Հայկական ՍՍՌ-ում։ Այստեղ բնակչության հիմնական զբաղմունքը կլինի արդյունաբերությունը։ Գնալով կբարձրանա ինդուստրիալ բնակչության տեսակարար կշիռը բնակչության ընդհանուր թվում։

Դա բխում է նաև նրանից, որ արդյունաբերության զարգացման տեմպերը շատ ավելի բարձր են լինելու, քան գյուղատնտեսությանը։ Աշխատանքի արտադրողականության բարձրացումը գյուղատնտեսության մեջ տեղի է ունենալու գյուղատնտեսական կուլտուրաների համար պիտանի հողերը ոչ մեծ չափով ընդարձակելու պայմաններում։ Հետևապես, գյուղի աշխատունակ բնակչության որոշ մասը կանցնի քաղաք։ Սա կլինի գյուղական բնակչության հաշվին քաղաքային բնակչության ավելացման աղբյուրներից մեկը։ Բացի դրանից, քաղաքների հետագա զարգացման և նրանց բնակչության տեսակարար կշռի ավելացման համար նյութական հիմք կծառայի արդյունաբերության հետագա համաչափ տեղաբաշխումը։ 1980 թվականին Հայաստանի քաղաքային բնակչությունը կհասնի 2500 հազարի կամ ռեսպուբլիկայի ամբողջ բնակչության 74,3 տոկոսը, 1959 թվականի 50 տոկոսի դիմաց։ Գյուղական բնակչությունը՝ 900 հազարի, այսինքն՝ գրեթե այնքան, որքան 1959 թվականին։

Քննարկվող ժամանակաշրջանը կնշանավորվի սոցիալիստական սեփականության երկու ձևերի զարգացմամբ ու մերձեցմամբ։ Կոլտնտեսային սեփականությունը կզարգանա կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերի հետըզհետե մեծացման, միջկոլտնտեսային ձեռնարկությունների ծավալման ուղիով։

Գնալով կբարձրանա սովխոզների տեսակարար կշիռը. նոր ոռոգվող ու յուրացվող հողերում կկազմակերպվեն նոր սովխոզներ։ Դրան զուգահեռ տեղի կունենա կոլտնտեսությունների հետագա խոշորացում։ Այդպիսի խոշորացումն անհրաժեշտ է նախ այն պատճառով, որ այժմյան փոքր կոլտնտեսություններում հնարավոր չէ օգտագործել սոցիալիստական խոշոր տնտեսության բոլոր առավելությունները։

Գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման ու կոմպլեքսային մեքենայացման շնորհիվ շեշտակիորեն կբարձրանա գյուղատնտեսական աշխատանքի արտադրողականությունը։ Եթե այժմ գյուղատնտեսության մեջ աշխատում են ավելի քան 325 հազար մարդ, ապա 1980 թ. այդ թիվը զգալիորեն կպակասի։



Նյութական արտադրության անշեղ վերելքի հիման վրա ՍՍՌՄ-ում կստեղծվի աշխարհում ամենաբարձր կենսամակարդակը։ Պարտիայի նոր Ծրագրում ժողովրդի ամենաբարձր կենսամակարդակը ապահովելու համար առաջ են քաշված երկու հիմնական պայմաններ։ Նախ՝ աշխատանքի արտադրողականության, ամբողջական հասարակական արդյունքի ազգային եկամտի աննախընթաց աճ։ Երկրորդ՝ աճող արտադրողական ուժերը և ողջ հասարակական հարստությունը ամբողջ ժողովրդի շահերին ի սպաս դնելը։

Հաշվարկումները ցույց են տալիս, որ Հայկական ՍՍՌ-ի ազգային եկամուտը 1961—1980 թվականներին կավելանա մոտ 12 անգամ։ Եթե նկատի ունենանք, որ նույն ժամանակամիջոցում ռեսպուբլիկայի բնակչությունը կրկնապատկվելու է, ապա մեկ շնչի հաշվով ազգային եկամուտը կավելանա 6 անգամ։ Ազգային եկամտի այդպիսի աճը սոցիալիստական ընդլայնված վերարտադրության պահանջներն ապահովելու հետ մեկտեղ նյութական հիմք կծառայի աշխարհում աշխատավորների ամենաբարձր կենսամակարդակ ստեղծելու համար։ Եթե ազգային եկամուտն ըստ սպառման ու կուտակման բաշխվի այժմյան համամասնություններով, այսինքն $^3/_4$-ը սպառման, $^1/_4$-ը՝ կուտակման նպատակով, ապա Հայկական ՍՍՌ-ի՝ մեկ շնչին ընկնող ազգային եկամտի սպառման չափը 1960 թվականի մակարդակը կգերազանցի 4,5 անգամ։

Ազգային եկամտի սպառման մասի այսպիսի աճը լիովին կապահովի պարտիայի ծրագրով նախատեսված ժողովրդի բարեկեցության բազմակողմանի վերելքը։ Պարտիայի նոր Ծրագիրը նախատեսում է մոտակա տարիներին հասնել այն բանին, որ բնակչության բոլոր խավերն օգտվեն լավ, բարձրորակ սննդից, ձեռք բերեն բավարար չափով լայն սպառման առարկաներ։

Պարտիայի նոր Ծրագիրը առանձնահատուկ նշանակություն է տալիս ՍՍՌՄ-ում բնակարանային պրոբլեմի լուծմանը։ Առաջիկա տասնամյակում պետք է վերջ տրվի բնակարանների պակասին, իսկ 1980 թվականին յուրաքանչյուր ընտանիք ապահովված կլինի առանձին բարեկարգ բնակարաններով։ Հայկական ՍՍՌ-ում նախատեսվում են բնակարանային շինարարության այնպիսի մասշտաբներ, որ 1970 թվականին հնարավոր լինի մեկ շնչին հասնող բնակելի մակերեսը հասցնել 11,5 քառակուսի մետրի, իսկ 1980 թվականին՝ 18 քառակուսի մետրի։ Առաջին տասնամյակում աշխատողների հիմնական մասի համար կսահմանվի վեցժամյա աշխատանքային օր և ավելի կրճատ աշխատաժամանակ մնացածների համար։ Հաջորդ տասնամյակում աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ ավելի կկրճատվի աշխատանքային օրը։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման ժամանակաշրջանում կընդլայնվեն սպառման հասարակական ֆոնդերը։ Որպես կոմունիստական բաշխման կարևոր նախադրյալ, դրանք ավելի արագ կաճեն, քան անհատական սպառման ֆոնդերը։ Պարտիայի Ծրագրով նախատեսվում է այդ ֆոնդերն ավելացնել ավելի քան 10 անգամ, այն հաշվով, որ 1980 թվականին դրանք կազմեն բնակչության եկամուտների մոտ կեսը։

Այսպիսով, նյութական արտադրության զարգացման տեմպերը կուղեկցվեն ժողովրդական տնտեսության համամասնական զարգացմամբ և պայմաններ կստեղծվեն հասարակության բոլոր անդամների աճող պահանջները լիովին բավարարելու համար։

# ՀԱԿԱԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԴԱՇՆԱԿ ԽՆԿԱՐԿՈՒՆԵՐԸ

Զ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

XX դարը մարդկության մեծ առաջընթացի, կոմունիզմի հաղթանակների դարն է։ «Կոմունիզմը, որը մի ժամանակ սոսկ երազանք էր, դարձել է արդիականության մեծագույն ուժը, մի հասարակարգ, որը կառուցվում է երկրագնդի ընդարձակ տարածություններում» (ՍՄԿՊ Ծրագրից)։ Սովետական Միությունում սոցիալիզմը հաղթանակել է լիակատար կերպով և վերջնականապես։ Կազմավորվել ու նորանոր հաջողություններ է ձեռք բերում համաշխարհային սոցիալիստական սիստեմը։ Մարդկության մեկ երրորդը նոր կյանք է կառուցում գիտական կոմունիզմի դրոշի ներքո։ Սոցիալիզմի աշխարհն ընդլայնվում է, կապիտալիզմի աշխարհը՝ նեղանում։ Իմպերիալիզմը թևակոխել է մայրամուտի ու կործանման ժամանակաշրջանը։ Աննախընթաց չափով աճում և ամրապնդվում է միջազգային կոմունիստական շարժումը, որը 88 երկրներում գործող իր ջոկատներում ունի 40 միլիոն կոմունիստ։ Այն իսկական համաշխարհային շարժում է։ Կոմունիստների հետևից հսկայական զանգվածներ են ընթանում։

Մեռնող կապիտալիզմի և առնականացող սոցիալիզմի միջև ամբողջ հոգադնդով մեկ ծավալված մրցությունը դարձել է արդի համաշխարհային զարգացման առանցքը։ Մեր դարաշրջանի բնորոշ գիծը հենց երկու հակադիր սիստեմների պայքարն է։ «Հասարակական զարգացման մեջ ավելի ու ավելի պարզորոշ են դրսևորվել երկու գիծ, պատմական երկու տենդենց,— ասում է ընկ. Խրուշչովը։— Մեկը՝ սոցիալական առաջադիմության, խաղաղության և կառուցման գիծն է։ Մյուսը՝ ռեակցիայի, ճնշման և պատերազմի գիծը»։ Դասակարգային այս պայքարը համաշխարհային ասպարեզում երկու հակադիր հասարակական սիստեմների խաղաղ գոյակցության ձև է ընդունում։

Իմպերիալիզմի իդեոլոգները խաղաղ գոյակցության սկզբունքը հակադրելով գաղափարական պայքարին, զարգացնում են այն միտքը, որ չի կարող խաղաղություն լինել այնտեղ, որտեղ գաղափարական պայքար է մղվում։ Մի կողմից նրանք սոցիալիզմի ուժերից իդեոլոգիական կապիտուլյացիա են պահանջում, մյուս կողմից՝ փորձում են խաղաղ գոյակցության պայմաններն օգտագործել սեփական գաղափարները տարածելու, մարտնչող հակակոմունիզմ քարոզելու համար։ Հակակոմունիզմը նոր պատերազմ սանձազերծելու բոլոր նախապատրաստական միջոցառումների հիմքն է։

Կապիտալիստական տերությունների ղեկավարներին կատաղեցնում են կոմունիզմի պատմական հաղթանակները, մեր երկրի հաջողությունները գիտության, տեխնիկայի, կուլտուրայի, ժողովրդական տնտեսության զարգացման ասպարեզներում։ Նրանք սարսափում են, որ կոմունիզմի հմայքը նորանոր



կողմնակիցներ է նվաճում կապիտալիստական երկրներում, որ սոցիալիզմի գաղափարներն օրավուր դառնում են մարդկանց մտքերի տիրակալը, հարաճուն ազդեցություն գործում նորանոր միլիոնների վրա։ Ռևոլյուցիայի հանդեպ ունեցած վախը «ազատ աշխարհի» տնօրեններին հրում է դեպի նոր ավանտյուրաներ, սանձարձակ հակաժողովրդական քաղաքականություն, պատերազմական հիստերիա։ Իմպերիալիզմը մոբիլիզացնում է իր բոլոր ուժերը, գործի դնում խարդախ ու խորամանկ մեթոդները, պրոպագանդիստական լավ կարգավորված և վարժեցված ապարատը։ «Հին աշխարհը անդուլ կերպով շարունակում է գրոհել մեզ վրա,— ասում է ընկ. Խրուշչովը։— Եվ իմպերիալիստների գլխավոր զենքը գաղափարական դիվերսիան է»։

Իմպերիալիստական պրոպագանդայի գաղափարական դրոշը հակակոմունիզմի սև դրոշն է։ «Իմպերիալիստական ռեակցիան մոբիլիզացնում է մասսաների վրա գաղափարապես ներգործելու բոլոր միջոցները,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— ձգնելով արատավորել կոմունիզմը և նրա վեհ գաղափարները, պաշտպանել կապիտալիզմը։ Իմպերիալիզմի գաղափարական-քաղաքական գլխավոր զենքը հակակոմունիզմն է, որի հիմնական բովանդակությունն է սոցիալիստական կարգերը զրպարտելը, կոմունիստական պարտիաների քաղաքականությունն ու նպատակները, մարքսիզմ-լենինիզմի ուսմունքը կեղծելը»։ Ոտնձգություններ կատարելով կոմունիզմի դեմ, իմպերիալիստական ռեակցիան հետապնդում և հալածում է այն ամենը, ինչ առաջավոր է, ռևոլյուցիոն, ձգտում է մարդկության հոգևոր կյանքը թունավորել նիհիլիզմով, պառակտել աշխատավորների շարքերը, ջլատել պրոլետարների պայքարի կամքը, դիմադրել պատմության օրինաչափ ընթացքին։ Դասակարգային կուրությունը, կոմունիզմի նկատմամբ անասնական ատելությունը խանգարում են կապիտալի գաղափարախոսներին հասկանալու աշխարհում տեղի ունեցող փոփոխությունների, մարդկության՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու էությունը։

Որքան ավելի խարխուլ են դառնում իր դարն ապրող կարգերի դիրքերը, այնքան հաճախ է բուրժուազիան ճչում «բարոյականության» և «իդեալների» մասին, կոմունիստներին վերագրելով իր անհաջողությունների բոլոր մեղքերը, իսկ ԱՄՆ-ին՝ «ազատ աշխարհի» միջնաբերդին, բոլոր առաքինությունները։

Հակակոմունիզմի դրոշի ներքո միասնական ճակատ են կազմել սոցիալական առաջադիմության բոլոր թշնամիները՝ «ֆինանսական օլիգարխիան և զինվորականությունը, ֆաշիստները և ռեակցիոն կղերականները, գաղութարարներն ու կալվածատերերը, իմպերիալիստական ռեակցիայի բոլոր գաղափարական աջակիցները։ Հակակոմունիզմը բուրժուական գաղափարախոսության դեգրադացիայի ծայրահեղ աստիճանի արտացոլումն է» (ՍՄԿՊ Ծրագրից)։ Հենց իմպերիալիզմի գաղափարական-քաղաքական պաշտպաններն են խոստովանում, որ այդ գաղափարախոսությունը փակուղու առջև է կանգնած։ Կապիտալիստական աշխարհի ղեկավարները շատ հաճախ արտահայտում են այդ՝ ապագայի նկատմամբ իրենց հոռետեսությամբ և անվստահությամբ։ «Մենք դատապարտված ենք,— 1961 թվականի հոկտեմբերին դառնորեն խոստովանել է ԱՄՆ-ի պրեզիդենտ Քենեդին,— մենք բոլորս... դատապարտված ենք մեր կյանքի մեծ մասը, եթե ոչ ամբողջ կյանքը, ապրել անորոշության, մրցահրավերի և վտանգի պայմաններում»։

Իմպերիալիզմն ի վիճակի չէ ծրագրային նպատակներ և լոզունգներ առաջադրել, որոնք կարողանային իրենց հետևից տանել կապիտալի երկրների աշ-

խատավորներին, դառնային նրանց դրոշը, հրապուրեին նրանց: Ի վիճակի չլինելով որևէ կոնստրուկտիվ ծրագիր մշակել, պատմության կողմից դատապարտված կարգը պաշտպանելու վրա իրենց ջանքերը լարող բուրժուական գաղափարախոսները և պետական գործիչները տարբեր կողմերից հարձակումներ են գործում կոմունիզմի դեմ, հայհոյում, դիմում ստի ու կեղծիքի: Տարբեր են նրանց գործողությունների ձևերը, մեթոդներն ու փաստարկները: Չեն դադարում սուր վեճերը նրանց միջև կապիտալիզմի «նպատակների», գաղափարական «վակուումի», «մարդկանց մտքերի համար ճակատամարտում» իմպերիալիստական Արևմուտքի դիրքերի թուլացման, դրանք ամրապնդելու ուղիների մասին. բայց նրանց էությունը, վերջին հաշվով, հանգում է մի բանի՝ հակակոմունիզմի:

Հակակոմունիզմը մոնոպոլիստական բուրժուազիայի սոցիալական դեմագոգիայի նորագույն ձևն է, նրա գաղափարախոսության ամենանողկալի զենքերից մեկը: Այն թշնամական մի գաղափարախոսություն և քաղաքականություն է ուղղված ո՛չ միայն սոցիալիստական պետությունների, այլև ամբողջ աշխարհի, ամբողջ ազատատենչ մարդկության ստեղծած առաջավորի, լավագույնի դեմ: Այն մեթոդիկորեն արմատավորվում է կապիտալիստական աշխարհի ինտելեկտուալ և գիտական կյանքի բոլոր բնագավառներում:

Կոմունիզմի գաղափարների ազդեցությունը հարաճուն է: Բուրժուազիան հսկայական ճիգեր է գործադրում խոչընդոտելու աշխատավոր զանգվածների ձախացմանը: Կապիտալի աշխարհի պարագլուխները խուճապի մեջ են: Նրանք կատաղի մոլուցքով բռնված, կոմունիզմի դեմ հարձակման նոր կոչեր են անում: Հենց վերջերս՝ ապրիլի 3-ին, ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության ոգեշնչողներից մեկը՝ Ռիչարդ Նիքսոնը «Նյու-Յորք Հերալդ տրիբյուն» թերթում կոչ արեց բոլոր միջոցներով ուժեղացնել պայքարը կոմունիզմի դեմ, նշելով, որ «կոմունիստներն աշխարհում գործում են որպես ընտիր կորպուս և ոչ թե հետևակային դիվիզիա»: Հակակոմունիզմ արմատավորելու նպատակով նա առաջարկում է ԱՄՆ-ում հատուկ Ազգային ֆոնդ ստեղծել, որը կոորդինացնի բոլոր հակակոմունիստների գործողությունները, լինեն դրանք ռեսպուբլիկականներ, թե դեմոկրատներ: Նա հարց է դնում՝ թե՛ դպրոցականներին և թե հասակավորներին դաստիարակել հակակոմունիզմի ոգով, ստեղծել հատուկ դասագրքեր և պատրաստել ուսուցչական կադրեր:

ՆԱՏՕ-ի, ՍԵԱՏՕ-ի և ՍԵՆՏՕ-ի սեսիաներում ու նիստերում կոմունիզմի դեմ միջազգային պայքարի պրոբլեմն ամեն անգամ քննարկվում է իր բոլոր ասպեկտներով: Ագրեսիվ ռազմական խմբավորումներում հակակոմունիստական պայքարի հատուկ հանձնաժողովներ են գործում: Հակակոմունիզմը դրվում է «գիտական» հիմքի վրա: Այն իր տրամադրության տակ ունի հետազոտական ինստիտուտներ, գրադարաններ, հետախուզական կենտրոններ: Այդ գործին է լծված կաթոլիկ եկեղեցու սպասավորների երկու միլիոնանոց բանակը: Սրանց բոլորի գործունեությունը ֆինանսավորում և գլխավորում են ֆինանսական խոշորագույն մագնատները՝ իրենց հարստությունն ու կարողությունը նվիրաբերելով կոմունիզմի դեմ «պատնեշ» ստեղծելու նպատակին:

Հակակոմունիստական կազմակերպությունները մերթ քողարկված են «ինֆորմացիոն» գերատեսչությունների, ռադիո կենտրոնների ցուցանակի տակ, մերթ դրանք ֆրանսիական ՕԱՍ-ի կամ ամերիկյան «Ջոն Բերչի ընկերության» նման բացահայտ ֆաշիստական կազմակերպություններ են: Դրանց ճնշող մե-



ծամասնությունը լրտեսում է կոմունիստներին, բանվոր դասակարգի առաջավոր գործիչներին, խաղաղության կողմնակիցներին: Կոմունիստական պարտիաների շարքերում պրովոկատորների խցկում, արդյունաբերական ձեռնարկություններում «սև ցուցակների» կազմում, կոմունիստների, ինչպես նաև արհմիություններում և պետական ապարատում աշխատող և հակակոմունիստներին չհարող ծառայողների, դասախոսների ու ուսուցիչների հետապնդումներ, ոստիկանական միջոցառումներ, հակակոմունիստական բազմատեսակ գրականության հրատարակում, ռադիոհաղորդումներ, ռեակցիոն հեղաշրջումների և դավադրությունների կազմակերպում՝ ահա հակակոմունիստական այդ կազմակերպությունների գործելակերպը: Հիշատակենք դրանցից մի քանիսը:

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ԱՄՆ-ում լայն գործունեություն է ծավալել «Ընդհանուր գործ» կազմակերպությունը, որտեղ ներկայացված են ինչպես պետական գործիչներ, այնպես և մոնոպոլիստներ և կղերականներ: Կազմակերպությունը էյզենհաուերին՝ որպես «կոմունիզմի անհաշտ թշնամու», պարգևատրել է իր «ազատության» մեդալով»: 1951թ. նույնատիպ կենտրոն է գործում Անգլիայում: 1955 թվականին Չիկագոյում հիմնադրված «Անվտանգության ամերիկյան խորհուրդն» իր գոյության երեք տարիներին «սև ցուցակներում» արդեն մեկ միլիոնից ավելի անուն էր գրանցել, այսինքն՝ շատ ավելի, քան ԱՄՆ-ի կոմպարտիայի անդամների թիվն է: 1950 թվականին Արևմտյան Բեռլինում գործող «Հանուն կուլտուրայի ազատության կոնգրեսը» մասնագիտացել է ինտելիգենցիայի շրջանում հակակոմունիզմ պրոպագանդելու մեջ: Այս գործակալությունն իր բաժանմունքներն ունի 21 երկրներում և ամենուրեք ակտիվ գործունեություն է ծավալում: Պատահական չէ, որ նրա գլխավոր քարտուղար է կարգված ռուս սպիտակգվարդիական Նաբոկովը: «Բարոյական վերազինվածություն» կազմակերպությունը, որ հիմնադրել է ամերիկյան կրոնական Բուխմանը, իր մասնաճյուղերն ունի 22 երկրներում: Վերջին ժամանակներս այն ձգտում է իր ազդեցությունը տարածել հատկապես Արևելքի երկրներում: 1959 թվականին նրա հրատարակած «Գաղափարախոսությունը և խաղաղ գոյակցությունը» գրքույկը, որն ուղղված է «սառը պատերազմը» բորբոքելու նպատակին, 80 միլիոն տիրաժով տարածվել է 24 լեզուներով:

«Ժողովուրդների հակաբոլշևիկյան բլոկ» կազմակերպությունը, որ հիմնադրել են գերմանական նացիստները 1942 թվականին հակահեղափոխական թափթփուկներից, ծառայում է ամերիկյան հետախուզությանը: Նրա կենտրոնը Մյունխենն է: Նրա կենտրոնական կոմիտեի անունից հանդես են գալիս հիտլերյան օկուպացիայի տարիներին Արևմտյան Ուկրաինայում ստեղծված բանդերովական կառավարության նախկին ղեկավար Ստեցկոն, ոմն իշխան Նակաշիձե, ֆաշիստ-նացիոնալիստներ Բեսեները, Յագոտինսկին, հունգարական խռովարարներ և այլ թափթփուկներ: Այդ կազմակերպության գործունեության մեջ հիմնականը երրորդ համաշխարհային պատերազմի անխուսափելիության և Սովետական Միությունը «սեպարատ պետությունների» բաժանելու պրոպագանդան է:

Այս և բազմաթիվ այլ կազմակերպություններին ֆինանսավորում են ռոքֆելլերները և մելոնները, դյուպոններն ու ֆորդերը: Բավական է ասել, որ «Ֆորդի ֆոնդը» (կապիտալը հասնում է 750 միլիոն դոլարի) 1951 թվականից մինչև 1960 թվականը հակակոմունիստական և այլ «հումանիստական» նպատակներով ծախսել է 259 միլիոն դոլար: Այն հատկապես ակտիվորեն է մաս-

նակցում «Խաչակրաց արշավանք՝ հանուն ազատության» հակակոմունիստական կազմակերպությանը։ «Ամերիկայի ձայն» ռադիոկայանը, որը հակակոմունիստական պրոպագանդա է մղում 43 լեզուներով, վերահսկվում է ռոքֆելլերների կողմից։

***

Հակակոմունիստական վերոհիշյալ կազմակերպությունների շարքին է դասվում նաև դաշնակցությունը՝ իմպերիալիստական մոնոպոլիաների հլու կամակատարը։ Դաշնակցությունը, որպես այդպիսին, «միշտ գտել է իրեն համար և՛ զինք գնահատող, ապա իր աշխատանքը վարձատրող ուժեր։ Օր մը Ալպիոն, ուրիշ օր մը Վիլհելմշթրասե, երրորդ օրը Ուոլլ Սթրիթ, առանց հաշվելու Քե դ'Օրսեն։ Դաշնակիզմը, իր օրգաններուն մեջ, օրն ի բուն կջատագովե Արեւմուտքը և զայն կհակադրե Արևելքի խավարին, որուն մեջ «ինկած է նաև Հայաստան»...» («Զարթոնք», 9. II 1962 թ.)։

Դաշնակ պարագլուխներն ամբողջապես լծվել են հակակոմունիզմի իմպերիալիստական մարտակառքին, ծառայում նրա նենգ դավերին։ Չկա իմպերիալիստական պրոպագանդայի կողմից սանձազերծվող որևէ հակակոմունիստական, հակասովետական կամպանիա, միջոցառում, որին չմասնակցեն նրանք։ Ընդ որում իրենց տերերին նվիրված ծառայելու մտայնությամբ արբած, նրանք հաճախ փորձում են մրցել ամենաթունդ ռեակցիոներների հետ։ Էյզենհաուերի նախաձեռնությամբ ամերիկյան սենատը դեռևս 1959 թվականի հունիսի 17-ին մի բանաձև ընդունեց, որը կոչ էր անում ամեն տարի հուլիսի երրորդ շաբաթը հռչակել «ստրկացված երկրների շաբաթ»։ Բանաձևի ցնորամիտ հեղինակները կարծես թե գրչի մի շարժումով ուզում էին սոցիալիստական երկրներում վերականգնել հին, կապիտալիստական կարգերը։ Նրանք շատ նման են Ֆրանսուա Ռաբլեի նկարագրած ասպետներին «Խելքի տոպրակների» երկրից։

Նոր պրեզիդենտ Քեննեդին շարունակում է իր նախորդի հակակոմունիստական գործելակերպը։ Ամերիկյան իմպերիալիզմի կողմից կազմակերպվող այդ դավը միջազգային իրավունքի, նրա հիմքերից մեկի՝ չմիջամտելու դոկտրինայի և հետևապես ՄԱԿ-ի սկզբունքների ամենակոպիտ խախտում է։ Ոչ ոք իրավունք չի տվել ամերիկյան կառավարող շրջաններին իրենց քիթը խոթելու ուրիշ երկրների ներքին գործերի մեջ, մանավանդ, երբ նրանց հետ ԱՄՆ-ը դիվանագիտական հարաբերություններ ունի։ Հենց այս անսքող միջամտության փաստը «շաբաթվա» կազմակերպիչներին մերկացնում է որպես սանձարձակ իմպերիալիստների։ Կոկորդիլոսի արցունքներ թափելով, նրանք երեսպաշտորեն կոչ են անում «ազատագրել» Արևելյան Եվրոպայի և Ասիայի ժողովուրդներին, որոնք դարձել են իրենց բախտի տերը, սոցիալիզմ են կառուցում։

Այդ առթիվ պատարագ են մատուցում «սուրբ» պատերազմի սքեմավոր ասպետները, ճառերով հանդես են գալիս կոնգրեսմեններն ու միլիարդատերերը։ Ռեակցիոն մամուլը լի է հակակոմունիստական, հակասովետական ամենալկտի հերյուրանքներով։ Մոնոպոլիստական կապիտալին ծառայող ռադիոյի և հեռուստատեսության ընկերություններն օր ու գիշեր թունավորում են եթերը հակակոմունիզմի թույնով։ Եվ ահա այն աշխարհից, որտեղ տիրապետում են կամայականությունն ու անօրինականությունը, որտեղ նորին մեծություն դոլարը ստրկացնում ու շահագործում է բազմաթիվ ժողովուրդների, ճիչեր են լսվում «ազատության» մասին։ Ժողովուրդների «ազատագրման» մասին են խոսում նրանք, ովքեր ոտնահարում են միլիոնավոր նեգրերի իրավունքները, ազատության և դեմոկրատիայի խղճուկ մնացորդներն իրենց երկրներում, քաղցի մատնում միլիոնավոր գործազուրկների, արյան մեջ խեղդում ազատության և անկախության համար մաքառող գաղութային երկրների ժողովուրդների պայքարը։



Միջազգային իմպերիալիզմի կողմից կազմակերպվող հակասոցիալիստական այդ ամենամյա աղմկարարությանը մասնակցում են հակակոմունիզմի բոլոր զինվորագրյալները,—Հռոմի պապն ու թուրքական ռեակցիոներները, ուկրաինական նացիոնալիստներն ու դաշնակները։ Դաշնակները համերաշխ են Արևմուտքի իմպերիալիստների հետ հակակոմունիստական ընդհանուր պայքարում։ Պարբերաբար հանդես գալով Բոստոնի անհայրենիքների «Հայրենիք»-ում, դաշնակ շեֆուկ Ռ. Դարբինյանը բաց դռներ է բախում, ջուր է ծեծում սանդերի մեջ՝ կրկնելով իր իմպերիալիստական տերերի անհեթեթությունը՝ սովետական ժողովուրդներին «ազատագրելու» մասին։ Նա դեռ դժգոհում է, որ ամերիկյան կառավարությունն իբր քիչ միջոցներ ու ջանքեր է տրամադրում հակասովետական ռադիո պրոպագանդային, պահանջում է ուժեղացնել այն (տես «Հայրենիք», 7. XI 1961 թ.)։ Մի այլ համարում նույն թերթը զովասանական խոսքեր է շռայլում 1956 թվականի հունգարական կոնտրռևոլյուցիոն խռովության հասցեին, զուգահեռականներ անցկացնելով նրա և 1921 թվականի փետրվարյան դաշնակցական ավանտյուրայի միջև (տե՛ս «Հայրենիք», 22. X 1961 թ.), հայհոյելով Սովետական Հայաստանին։ «Դաշնակիզմը անվարան «բոլշևիկ» կանվանե այն բոլոր հայերն ու հայ կազմակերպությունները, մանավանդ և հայ եկեղեցին, որոնք իրեն պես չեն հայհոյում Հայաստանի իշխանության և Հայաստանը դժոխք չեն կոչում։ Զանոնք կանվանեն «բոլշևիկյան գործակալ», երբ անոնցմե մին կսկսե խանդավառվել և խոսիլ Հայաստանի մեջ որևէ հառաջադիմության և նվաճումի մասին»,— գրում է Բեյրութի «Զարթոնքը» (9. II 1962 թ.)։

Դաշնակ պարագլուխները սարսափում են, որ սովետահայ արվեստի, գրականության ու կուլտուրայի ներկայացուցիչներն այցելում են Սփյուռք, իրենց հետ տանելով Սոցիալիստական Հայաստանի հմայքը։ Դրանց միջոցով, դժգոհում է ամերիկյան դաշնակների օրգանը, «Հայրենիքի և հայրենասիրության անունով՝ «սովետականին» և Սովետական Միության գովքն է, որ կըհյուսվի»։ «Ձենք անգիտանար — գրում է այդ թերթուկը,—Հրաչյա Քոչարի այցելության «պտուղները»՝ Միջին Արևելքի մեջ, ուր ան, մասնակի «կարևոր» աշխատանքներու գծով, ջանաց մտքեր թունավորել և մեր ժողովրդի անխառն հայրենասիրությունը օգտագործել՝ ի նպաստ իրեն վստահված քաղաքական առաքելության»։

Իմպերիալիստական պրոպագանդիստների հետ ձեռք-ձեռքի տված, ի՞նչ ստեր ասես, որ չեն հորինում դաշնակ գրչակները՝ զրպարտելու համար սոցիալիստական կարգերը, մեր ժողովրդի ազատ ու երջանիկ կյանքը և նրա արտասահմանյան բարեկամներին։ Ահա ստի ու կեղծիքի մի ցայտուն օրինակ։

«...Սովետական Երևանը բացարձակապես զուրկ է խղճի, մտքի, խոսքի ու ստեղծագործության որևէ ազատութենե,— վայրահաչում է Ռ. Դարբինյանը,— և հայ ազգային ինքնուրույն մշակույթի զարգացման համար ալ կատարելապես աննպաստ գետին մը կներկայացնե»։

Միայն քաղաքականապես կույրերը և դարբինյանների նման տեսաբանները» կարող են խեղաթյուրել Սովետական Միությունում, սոցիալիստական երկրներում կատարված պատմական վերափոխությունների իմաստը և «չհասկանալ», որ իսկական ազատությունն այնտեղ է, որտեղ ոչնչացված է մարդու շահագործումը մարդու կողմից, որտեղ աշխատավորներն ակտիվ մասնակցում են երկրի ամբողջ հասարակական ու տնտեսական կյանքին։ Նրանք իրենք են կառավարում պետությունը և արտադրությունը, իրենք են ընտրել իրենց սոցիալական կարգը։ Ոչ ոք, առավել ևս ստոր գործարքներով իրենց ընդմիշտ վարկաբեկված դաշնակները, և ոչ մի իրավունք չունեն վայրահաչելու սոցիալիստական երկրների ժողովուրդների պատմական նվաճումների դեմ։

Հայտնի է, որ շատ հակակոմունիստներ ժխտում են սոցիալիստական կարգի գոյությունը ՍՍՌՄ-ում և սոցիալիստական լագերի երկրներում։ Իմպերիալիստական ռեակցիայի այդ գաղափարախոսները պնդում են, թե սոցիալիզմի երկրներում տիրապետում է... պետական կապիտալիզմը։ Օրինակ, այդ են փորձում ապացուցել Արևմուտքում աղմուկ հանած «Կապիտալիստական մանիֆեստ» բազմախոստում գրքի ամերիկացի հեղինակներ Լ. Քելսոնն ու Մ. Ադլերը և կապիտալիզմը «ժողովրդական» ու «դեմոկրատական» հռչակող բազմաթիվ այլ բուրժուական հեղինակներ։ Բոլորովին զարմանալի չէ, որ մի ժամանակ իրենք իրենց սոցիալիստ հորջորջող դաշնակ գրչակները նույնպես ձգտում են, թեկուզ և միապետական, հետամնաց կարգերը գովաբանելուն զուգահեռ, ետ չմնալ սոցիալիզմի մոդայիկ քննադատությունից։ Ժողովուրդների սոցիալական և կուլտուրական զարգացումը կաշկանդող, նրանց խավարի ու աղքատության ճիրաններում պահող, մեր դարի ամենադատապարտելի անախրոնիզմը հանդիսացող միապետների իշխանությանը և նրանց անձնավորությանը «...հայրենասեր, ժողովրդասեր, ազգանվեր, լուսամիտ, դեմոկրատ հակումներով տոգորված թագավոր... իրատես, հստակատես, սառնարյուն, խոհուն, հաստատակամ և վճռական պետական քաղաքական մարդ» սիրտ խառնող գովասանքներ շռայլող դաշնակ թերթուկ «Ալիքն» իր էջերում հանդես եկած Ս. Վրացյանի միջոցով չի զլանում մտավոր մարզանքներ կատարել սոցիալիզմի տեսության ու պրակտիկայի գնահատման հարցերում ո՛չ միայն «պետական կապիտալիզմ», այլև «ճորտատիրական իրավակարգ» գտնելու համար սոցիալիզմի երկրներում։ Կարծում եք «Ալիքը» մենա՞կ է։ Ո՛չ. նրան ձայնակցում է Բեյրութի դաշնակ օրգան «Ազդակը», որի թղթակիցն իր կյանքի «լավագույն օրերեն մեկն» է հռչակում միապետ տեսնելը և նրա հետ խոսելու առիթն ունենալը։

Սոցիալիստական հասարակարգի, մեր պարտիայի Ծրագրի, կոմունիզմի կառուցման պլանների բուրժուական քննադատները շատ-շատ են։ Իմպերիալիստական պրոպագանդայի գլխավոր հոգսն, իհարկե, այն է, որ թուլացնի Ծրագրի ազդեցությունը կապիտալիստական աշխարհի աշխատավորների վրա, նրանց շրջանում թերահավատություն, տարակուսանք սերմանի մեր պլանների իրագործելիության վերաբերյալ։ Այս նպատակով գործի են լծված գիտահետազոտական ու ինֆորմացիոն կենտրոնները, բուրժուական տնտեսագետներն ու սոցիոլոգները, որոնք մրցում են «համոզիչ փաստարկներ» հրապարակ հանելու մեջ։ Ոմանք կասկածի տակ են առնում ՍՍՌՄ-ի տնտեսական զարգացման տեմպերը, հուսադրում իրենց, թե մեր երկիրը կհրաժարվի ծանր արդյունաբերության հետագա արագ զարգացումից, բանվորական ուժի պա-



կաս կզգա և այլն և այլն։ Սրանք իրենց մտքերը փորձում են հաստատել «վերլուծություններով» ու «հաշվարկներով», «համեմատություններով» ու «համադրություններով»։ Այնուամենայնիվ Արևմուտքի հակասովետական ամենաթունդ հակառակորդներն անգամ ստիպված են խոստովանել տնտեսության, գիտության ու տեխնիկայի ասպարեզում Սովետական Միության խոշոր նվաճումները։ Իսկ պարոնայք դաշնակները միայն վայրահաչում են, չարախոսում ու հայհոյում։ Ինչպես միշտ, այնպես էլ այժմ նրանք զուրկ են տարրական լրջմտությունից։ Նրանք նույն հին վարժապետներն են։ Իր իսկ խոստովանությամբ, տակավին մեր պարտիայի Ծրագրին չծանոթացած, Ս. Վրացյանն «Ալիքի» էջերում արդեն դոնքիշոտյան արշավանք էր ծավալել նրա դեմ։ Նրա գրչի շարժիչը նույնպես հակակոմունիզմն է։ Որպեսզի պարզ դառնա մեր պարտիայի Ծրագրի այս տկարամիտ քննադատի անճարակությունների խղճուկությունը, ասենք միայն, որ նրա առարկայազուրկ «մեկնաբանությունները» հանգում են այն բանին, որ Ծրագիրը կարող է և՛ կատարվել, և՛ չկատարվել. «սասնկ ալ կլլայ, անանկ ալ կլլայ», եզրակացնում է զառամյալ «տեսաբանը»։

***

Արդիականության հիմնական հարցը պատերազմի և խաղաղության հարցն է։ Այն դարձել է հարյուր միլիոնավոր մարդկանց կենաց և մահու պրոբլեմ։ Այժմ որևէ պարտիայի, հասարակական ու քաղաքական կազմակերպության, առանձին գործիչների հավատո հանգանակը, նրանց գործունեության առաջադիմական կամ հետադիմական բնույթը բնորոշվում է ատոմային դարաշրջանի այդ գլխավոր պրոբլեմի նկատմամբ ունեցած վերաբերմունքով։ Ո՞ւմ հետ են դաշնակ պարագլուխները—խաղաղության կողմնակիցների՞, թե՞ պատերազմի հրձիգների, միջազգային լարվածությունը պահպանելու, «սառը» պատերազմը շարունակելու և այն «տաքի» վերածելու կողմնակիցների հետ։ Փաստերը վկայում են, որ նրանք ծառայում են խաղաղության թշնամիների բանակին, միջազգային իմպերիալիզմի ավանտյուրիստական պլաններին։ Չկա միջազգային կյանքում կատարվող և ոչ մի իրադարձություն, որին դաշնակ մամուլը չարձագանքի իմպերիալիստական պրոպագանդայի դիրքերից։ Այն իր էջերը լցնում է իմպերիալիստական Արևմուտքի ամենառեակցիոն, հակակոմունիստական թերթերից ու ամսագրերից կատարված արտատպություններով, «Ամերիկայի ձայն» և Մյունխենի «Ազատություն» ռադիոկայանների հաղորդումներով։ «Հայրենիքը» պարբերաբար հանդես է գալիս միջազգային լարվածության մեղմացմանն ուղղված սովետական առաջարկների ու ՍՄԿՊ XXII համագումարում ընկ. Զարոբյանի արտասանած ճառի դեմ։ Կահիրեի «Հուսաբերը» «Միջազգային համաձայնավարության շուրջ քաղվածքներ» խորագրի տակ ընթերցողներին մատուցում է իմպերիալիստական պրոպագանդայի հակակոմունիստական, հակասովետական «տեսական բազում գոհարներ»։

Գաղտնիք չէ, որ ժամանակակից հակակոմունիզմի տրուբադուրների ճընշող մասն իր «տեսական» մարզանքներում ելնում է համաշխարհային պատերազմի անխուսափելիությունից։ Օրինակ, ամերիկյան սենատոր Բ. Գոլդուոթերն իր «Պահպանողականի խիղճը» գրքում ուղղակի գրում է, թե ԱՄՆ-ի ղեկավարող շրջանների արտաքին քաղաքական նպատակը պետք է «ոչ թե

խաղաղությունը լինի, այլ կոմունիզմի նկատմամբ տոտալ հաղթանակը»։ Այսպիսի մտածելակերպ ունեն իմպերիալիզմի առավել ագրեսիվ շրջանների ներկայացուցիչները, որոնք ծառանում են երկու սիստեմների խաղաղ գոյակցության գաղափարի դեմ, կոչ են անում «խաչակրաց պատերազմ հայտարարել կոմունիզմի դեմ», միջուկա-հրթիռային պատերազմ սկսել։

Սրանց շարքում է դաշնակ ստահակ Ռ. Դարբինյանը։ Նա նույնիսկ ճըգնում է առաջ անցնել իր արևմտյան կաթնեղբայրներից։ Խեղաթյուրելով կոմունիստների նպատակները, մեր պարտիայի Ծրագրի այն դրույթը, որ «Սովետական Միությունը հետևողականորեն պաշտպանել է և կպաշտպանի հասարակական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության քաղաքականությունը», որը «ենթադրում է՝ հրաժարվել պատերազմից որպես պետությունների միջև վիճելի հարցերը լուծելու միջոցից», նա սևով սպիտակի վրա գրում է, թե «բոլոր համայնավարները անխտիր, իրենց նպատակներին հասնելու համար, պատրաստ են դիմելու ամեն միջոցի, նաև ընդհանուր պատերազմի, եթե ուրիշ ձևով չկարողանան հասնել իրենց նպատակին»։ Դաշնակ թերթուկները՝ «Հայրենիքից» մինչև «Ալիք» վարպետացել են սպառազինությունների կրճատման, զինաթափման ու միջուկային զենքի փորձարկումները դադարեցնելու և արգելելու հարցերում Սովետական Միության դիրքը կեղծելու գործում։ Նրանք ցեխ են շպրտում բոլոր նրանց երեսին, ովքեր այդ հարցերում համաձայն չեն իրենց հետ։ Ռ. Դարբինյանը զայրանում է, որ «Արևմուտքի, մասնավորապես Անգլիոյ մեջ կան մարդիկ, որոնք, գլխավորությամբ տխրահռչակ փիլիսոփա լորդ Ռասելի» պայքարում են նոր պատերազմի դեմ, հանուն միջուկային զենքի արգելման։ «Եթե մարդիկ միշտ ղեկավարվեին փիլիսոփա Ռասելի մտայնությամբ, այսօր աշխարհիս երեսին ազատության նշույլն անգամ պիտի չըլլար...»,— փարիսեցիորեն եզրակացնում է դաշնակ գրչակը։ Անհանգստացած ԱՄՆ-ում խաղաղ գոյակցության քաղաքականության ազդեցության ուժեղացումից, պատերազմի դաշնակ ապետը «...ավելի խիստ, ավելի անզիջող և ավելի հարձակողական քաղաքականության» կոչ է անում։ Նա փորձում է միամիտ ընթերցողներին համոզել, որ իբր Սովետական Միության քաղաքականության նպատակն է՝ կա՛մ համաշխարհային պատերազմ, կա՛մ կապիտալիզմը պետք է անձնատուր լինի կոմունիզմին։ Հակակոմունիզմի դաշնակ ջատագովները որդեգրել և պրոպագանդում են իմպերիալիստական գաղափարախոսների կողմից փայփայվող «լավ է մահը կապիտալիզմի օրոք, քան կյանքը կոմունիզմի օրոք» ժողովուրդներին ահաբեկող, պրովոկացիոն մտայնությունը։ Լինելով Մաքարենի ռեակցիոն օրենքի ջերմ պաշտպանը, Դարբինյանը պահանջում է այն տարածել ո՛չ միայն ԱՄՆ-ի կոմունիստական պարտիայի գործունեության, այլև երկրում գործող հայկական և այլազգի առաջադիմական կազմակերպությունների վրա։ Ահա թե ինչ է գրում դարբինյանների մասին «Արարատ» թերթը։ Նրանք «պաղ պատերազմի ոծով միջազգային բարձր քաղաքականություն կխաղան ծիծաղելի դառնալու աստիճան և կշարունակեն իրենց ազգավնաս սխրագործությունները՝ զրպարտելով իրենցմե դուրս եղող հայությունը որպես համայնավար, վարկաբեկելով ու սևացնելով իրենց մայր Հայրենիքը սիրող ու անոր վերելքին հավատացող հայերը հաշս օտար իշխանությանց...»։ «Հայրենիք»-ի փետրվարի 1-ի համարում «Ինչպե՞ս կմղվի պաղ պատերազմը» հոդվածում Դարբինյանը բացահայտորեն հանդես է գալիս ֆաշիզմի ջերմ պաշտպանի դերում։ Նա դժգոհ



է, նույնիսկ վիրավորված, որ Արևմուտքի թերթերում և ղեկավար գործիչների արտահայտություններում իբր թե «ավելի խիստ, անհաշտ և անտեղիտալի» վերաբերմունք է դրսևորվում ֆաշիստական «պզտիկ ու միանգամայն տեղական վտանգներուն» (ընդգծումը մերն է —Զ. Կ.), քան կոմունիստական «ահավոր վտանգին»։ Դարբինյանը նույնիսկ դժգոհում է, թե իբր ֆաշիստական Իսպանիան բոյկոտի է ենթարկված, մինչդեռ «համայնավար Հարավսլավիան և Լեհաստանը Արևմուտքի «գուրգուրանքը կվայելեն» և «տնտեսական օգնություն կստանան»։ Նա պահանջում է, որ ֆաշիստական պետությունները դառնան կապիտալիստական Արևմուտքի լիիրավ անդամները, ընդհանուր ճակատ կազմեն կոմունիզմի դեմ։

***

Մեր օրերում, ճնշված ժողովուրդների ազատագրության դարում, ազգային-ազատագրական ռևոլյուցիաների հզոր ալիքը սրբում-տանում է գաղութային սիստեմը, քայքայում է իմպերիալիզմի հիմքերը։ Ասիայում, Աֆրիկայում, Լատինական Ամերիկայում նախկին գաղութների ու կիսագաղութների տեղում ծնվել և ծնվում են նոր սուվերեն պետություններ։ Բայց այդ պայքարը դեռ չի ավարտվել։ Հնկայական աշխարհամասերում պայքարը առաջադիմության ու հետադիմության, սոցիալիզմի ու կապիտալիզմի, իրենց ազգային սեփական ցանկությամբ կերտելու ծարավի աշխատավորական հոծ զանգվածների ու իմպերիալիզմի, գաղութակալության ուժերի միջև բոլոր գծերով շարունակվում է։ Իմպերիալիզմը գործի է դնում բոլոր միջոցները՝ գաղափարական զենքն ու տնտեսական լծակները, ռազմական ուժն ու կրոնական սպասավորներին՝ խոչընդոտելու համար սոցիալիզմի գաղափարների հարաճուն ազդեցությունը, կանխելու ազգային-ազատագրական ռևոլյուցիաների խորացումը, պահպանելու իր խարխլված դիրքերը։

Եվ պատահական չէ, որ դաշնակ պարագլուխները գաղութարարների հետ են ընդդեմ ազգային-ազատագրական շարժումների, հետադիմական ուժերի հետ են՝ ընդդեմ առաջադիմության, ժողովուրդների ազատության։ Դաշնակ թերթուկները կրկներգն են կատարում գաղութարարների այն պրոպագանդայի, թե կապիտալիստական Արևմուտքը կամավոր անկախություն է ընձեռում Ասիայի և Աֆրիկայի երկրների ժողովուրդներին, ամերիկյան յանկիների հետ դուրս են գալիս ընդդեմ ռևոլյուցիոն Կուբայի, արաբական ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման, խեղաթյուրում են սովետական և սոցիալիստական մյուս երկրների ժողովուրդների ազգային փոխհարաբերությունների բնույթը, թույլ զարգացած երկրներին սոցիալիզմի լագերի կողմից ցույց տրվող տնտեսական օգնության նպատակները։

Դաշնակ ավանտյուրիստների պրոիմպերիալիստական վարքագիծը հատկապես ցցուն է Արաբական երկրներում։ Արաբական առաջադիմական շըրջանները միանգամայն օրինական հարց են տալիս. «Մենք կհավատանք՝ որ հայերը արաբասեր են և արաբներուն հավատարիմ, բայց թույլ տվեք հարցնել ձեզի, թե ինչո՞ւ ձեր կարգ մը թերթերը միշտ գովասանական հոդվածներ կըտպեն Ամերիկայի, Կանադայի, Ֆրանսիայի և այլ վայրերու մասին. ինչո՞ւ շատ կխոսեն ամերիկյան ըմբռնումով «ազատության» մասին և ինչու կջատագովեն «ֆրի էնթըրփրայզ» (ազատ գործարարություն — Զ. Կ.) կոչված դրությու-

նը...»։ Արաբական բոլոր առաջադեմ ու հակաիմպերիալիստական ուժերը դա-
տապարտում են դաշնակներին, «կայսերապաշտ երկիրներու մասին» նրանց
«հիացական հոդվածները», «Անգլիոյ ռազմական, բարոյական և այլ ուժերը
ջատագովող հրատարակությունները», Ամերիկայի «ազատարարական» կարո-
ղությունններուն մասին» նրանց «հավատքը» («Զարթոնք», 10. II 1962)։ Ահա
թե ինչ է գրում Լիբանանում լույս տեսնող «Մեր նշանաբանն է Հառաջ» առա-
ջադիմական թերթը (4. III 1962) անցյալ տարի Սիրիայում բացահայտված և
դատի տրված դաշնակ լրտեսական խմբի գործունեության մասին «...անոնք
կզինվեին օգնելու համար Սուրիո դեմ դավադրող իմպերիալիզմին, որ միակ
իրական վտանգը եղած է Սուրիո համար։ Անոնք կզինվեին օգնելու համար
ամերիկյան իմպերիալիզմին, որուն հրամանով Թուրքերը Սուրիա ներխուժած
պիտի ըլլային՝ եթե այդ օրերուն սովետական վճռական ազդարարությունը
իրենց տեղը չնստեցներ զանոնք»։ Եվ այնուհետև. «Մովսես Տեր-Գալուստյանի
և տոքտ. Ն. Խաթանասյանի ղեկավարած բյուրոյական դաշնակցությունը իմ-
պերիալիստներուն, հատկապես ամերիկյան իմպերիալիզմին, լրտեսներ,
մարդասպաններ և խափանարարներ հայթայթող դավադրական սպասարկու-
թյուն մըն է միայն, որ կդավադրե խաղաղության դեմ ամենուրեք և կդավա-
ճանե և հայ ժողովուրդին, արաբ ժողովուրդներու և սուրիական ու արաբական
բոլոր հայրենիքներուն, և հայ ժողովուրդի Մայր Հայրենիք Սովետական Հա-
յաստանի ազգային գերագույն շահերուն»։

«Հայրենիքը» անամոթաբար պաշտպանության տակ է առնում պորտուգա-
լական գաղութարարներին, վատաբանում Հնդկաստանի ռեսպուբլիկայի կառա-
վարությանը, որը մայր երկրի հետ վերամիավորեց պորտուգալական նախկին
գաղութներ Գոան, Դամանը և Դիուն։ Նրա էջերում Ռ. Դարբինյանը հանդես
է գալիս Արևելքի երկրներում իմպերիալիզմի դիրքերը պահպանելու նոր մե-
թոդներ ու միջոցներ գտնելու խորհրդատուի դերում։

Իմպերիալիստների խուճապն իր անմիջական արձագանքն է գտել դաշ-
նակ ծառայամիտ գրչակի մոտ։ Դառնորեն խոստովանելով, որ «հետամնաց
և կիսավայրենի» երկրներին ցույց տրվող ամերիկյան օգնությունը դժվար թե
ի վիճակի լինի նրանց հեռու պահել սոցիալիզմի գաղափարների ազդեցու-
թյունից՝ նա գրում է. «...հետամնաց երկրներու ժողովուրդները այնքան թու-
նավորված են արդեն համայնավար պրոպագանդայեն, ուր տնտեսական կամ
թեքնիք առավելագույն իսկ օգնություններով ու իր խղճուկ հակապրոպագան-
դայով Արևմուտքը չպիտի կրնայ կարճ ժամանակի մեջ զանոնք դարձնել իր
զինակիցները»։ Դարբինյաններին, անշուշտ, ձեռնտու չէ հիշատակել, որ ամե-
րիկյան և արևմտյան մյուս երկրների մոնոպոլիաները թույլ զարգացած երկըր-
ներից ամեն տարի 20 միլիարդ դոլար շահույթ են ստանում։ Գաղութարարների
դաշնակ պաշտպանները գերադասում են խոսել Արևելքում ամերիկյան և արև-
մտա-եվրոպական իմպերիալիստների «քաղաքակրթիչ» դերի մասին, քան
նրանց բացահայտ կողոպուտի մասին։

Այս ամենը վկայում են այն մասին, որ «Երիտասարդ Հայաստան» թերթի
արտահայտությամբ, դաշնակցությունը «...դարձած է օտար կարգ մը պե-
տություններու սպասարկուն, սկսած է գործել իր խնամակալներուն շահերուն
թելադրած եղանակով..., որ... դաշնակ բյուրոն կսպասարկե գաղութարար պե-
տություններուն, իսկ գաղութարարները բոլոր ժողովուրդներուն հասարակաց
թշնամիներն են»։



Պատմական ճշմարտություն է, որ այլ ժողովուրդներին սիրել, նրանց
ձգտումներն ու պայքարը կարող են ըմբռնել միայն նրանք, ովքեր սիրում են
իրենց ժողովրդին, ապրում են նրա ներկայով և ապագայով։ Իսկ դաշնակ
ազգուրացները անհայրենիք են, հայ ժողովրդի թշնամիները։ Նրանք իրենց
պարտքն են համարում «գուրգուրալ արտասահմանի վրա», այն համարել հայ
«նոր սերունդների համար» «ազատության» շրջան, իսկ Սովետական Հայաս-
տանը վատաբանել, այնտեղ կատարվող աննախընթաց խաղաղ ստեղծագոր-
ծական աշխատանքը սևացնել, ցեխ շպրտել հայ ժողովրդի սոցիալիստական
մեծ նվաճումների վրա։ Բնորոշ է, որ երբ Հայաստանի Կոմունիստական պար-
տիայի XXII համագումարի ամբիոնից հայտարարվեց ներգաղթի մասին, դաշ-
նակները հերթական վայնասուն բարձրացրին։ Այժմ, երբ «...Հայաստանը
կրկին կբանա իր դռները ոչ միայն իբրև հայ, այլ որպես մարդ էակ ալ իրենց
գոյությունը ապահովելու մղձավանջով տառապող գաղթականներու առջև,
դարբինյանները կբղավեն կրկին.— Կաց, մի գնա... առեղ-դերձան չկա Հա-
յաստանում...»։ Հիրավի, հայրենադարձության շարժումը դաշնակների հա-
մար մի ահավոր մղձավանջ է։

Հակակոմունիզմի ոգեշնչողներից երեսուն արծաթ ստանալու մտահոգու-
թյամբ տարված, «...Ամերիկայեն մինչև Եգիպտոս և Լիբանանեն մինչև Իրան,
դաշնակները լարած են իրենց պրոպագանդայի մեքենան և լուտանք ու դա-
տապարտություն կժայթքեն Հայրենիքի և հայրենադարձության դեմ։ Հատկա-
պես դաշնակներու Բոստոնի օրգանը՝ «Հայրենիք» այս օրերուն սրբազան ա-
ռաքելություն դարձուցած է հայրենադարձի դեմ հանրային կարծիք ստեղծելու
ազգուրաց և հայրենադավ գործը» («Աշխարհ», Փարիզ, 24. III, 7. IV 1962 թ.)։

Սակայն զուր են պատմության կողմից աղբարկղը նետված քաղաքական
ստահակների ողորմելի ճիչերը։ Հակակոմունիզմն իր դաշնակ մասնաճյուղով
հանդերձ դատապարտված է ձախողման, որովհետև ուղղված է առաջադիմու-
թյան, խաղաղության և ամբողջ մարդկության կենսական շահերի դեմ։ Հակա-
կոմունիզմն անզոր է, որովհետև կոմունիզմը հետադիմությանը հակադրում է
պրոգրես, ստին՝ ճշմարտություն, կյանքը պաշտպանում է մահից։

Մեծ Լենինը մեզ պատգամել է՝ «հաղթահարել կապիտալիստների ոչ միայն
ռազմական ու քաղաքական, այլև գաղափարական ամբողջ դիմադրությունը,
որն ամենախորն ու ամենազորն է» (Երկեր, հ. 31, էջ 464)։ Դրա համար պար-
տիան կոչ է անում ոչ թե պաշտպանվել, այլ հարձակվել գաղափարական ճա-
կատում։ «Հին աշխարհի դիվերսիաները,— ասաց ընկ. Խրուշչովը կոմերիտ-
միության XIV համագումարում,— կշարունակվեն, քանի դեռ չի լուծվել «ով-
ում»-ի հարցը, քանի դեռ ամբողջ երկրագնդում վերջնականապես չի հաստատ-
վել կոմունիզմի կարմիր դրոշը, աշխատանքի կարմիր դրոշը»։

# «ՏՆՏԵՍԱԿԱՆ ԱԶԱՏՈՒԹՅՈՒՆԸ» ԿԱՊԻՏԱԼԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

Կ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

> Ամեն մի ազատություն խաբեություն է, եթե այն հակասում է կապիտալի ճնշումից աշխատանքի ազատագրման շահերին։
>
> Վ. Ի. ԼԵՆԻՆ

«Ազատություն» հասկացությունը նույնքան հին է, որքան մարդը։ Սակայն հասարակական տարբեր ֆորմացիաներում նրա բովանդակությունը պայմանավորված է եղել հակամարտ դասակարգերի շահերով։ Մի դասակարգի ազատությունը բացառել է հակոտնյա մյուս դասակարգինը։ Ազատության համար պայքարել են ստրուկն ու ստրկատերը, ճորտն ու ֆեոդալը, բանվորն ու կապիտալիստը և յուրաքանչյուր դասակարգի գաղափարախոս յուրովի է հասկացել ու մեկնաբանել, յուրովի է կիրառել ազատությունը։ Այսպես, օրինակ, մինչև 1789 թվականը, ֆրանսիական արիստոկրատիան ուներ լայն արտոնություններ, որոնք սահմանափակում էին բնակչության մյուս խավերի՝ «երրորդ դասի» ազատությունը։ Այնուհետև, 1789 թվականին բուրժուազիան ազատության լոզունգով գրոհեց ֆեոդալիզմի ամրոցի վրա և հաղթեց՝ ձեռք բերելով վարձու աշխատանքի անսահմանափակ ազատություն, որն անհրաժեշտ պայմաններ ստեղծեց կապիտալիզմի զարգացման համար։ Ազատության քողի տակ էին իրականացնում կեղեքող դասակարգերի նպատակները Նապոլեոնն ու Բիսմարկը, Թեոդոր Ռուզվելտն ու Լլոյդ Ջորջը, Մուսոլինին ու Հիտլերը...

Այսօր էլ հասկանալով, թե երկրագնդի միլիոնավոր մարդկանց համար որքան թանկ է ազատությունը, կապիտալի ջատագովներն ամեն քայլափոխում նենգափոխում են այն՝ կապիտալիստական շահագործումը սքողելու նպատակով։ Ուստի պատահական չէր այն, որ Կուբայի դեմ կազմակերպված ագրեսիայի նախօրյակին արտասանած իր ճառում, ԱՄՆ-ի պրեզիդենտ Ջ. Քենեդին քանիցս խաղաց «ազատություն» բառի հետ։ Եվ ինչպես կարող էր նա չկրկնել այն, երբ դրա տակ քողարկվում են Կուբայի ժողովրդի նվաճած ազատության դեմ ուղղված միլիարդատերերի դավերը։ Կարելի է առանց չափազանցության ասել, որ մարդկային բանականության բազմաթիվ հասկացություններից ամենից շատ ազատությունն է չարաշահվել կապիտալի խրնկարկուների ու պնակալեզների կողմից՝ աշխատավորության կեղեքումն արդարացնելու համար։



Անվերջ շաղակրատելով «ազատության» մասին, իմպերիալիզմի գաղափարախոսները մի նպատակ ունեն՝ կոծկել կապիտալիզմի դեմքը, ժողովուրդներին շեղել իրական ազատության համար մղվող պայքարի ուղուց՝ սոցիալիզմից։ Ջո՜ւր ճիգեր։ «Հարյուր միլիոնավոր մարդիկ տեսնում են, որ կապիտալիզմը տնտեսական անարխիայի և պարբերական ճգնաժամերի, խրոնիկական գործազրկության և մասսաների աղքատության, արտադրողական ուժերի գիշատիչ վատնման հասարակարգն է, մի հասարակարգ, որը մշտապես բերում է պատերազմների սպառնալիք։ Մարդկությունը չի ուզում հաշտվել և չի հաշտվի կապիտալիզմի սիստեմի հետ, որը պատմականորեն իր դարն ապրել է» (ՍՄԿՊ Ծրագիր, էջ 40—41)։

Բուրժուազիայի գաղափարախոսները հատկապես շատ են խոսում կապիտալի ընձեռած «տնտեսական ազատությունների» մասին։ Նպատակ չունենալով խորանալ ազատության սահմանման տեսական մանրամասնությունների մեջ, կոնկրետ փաստերով աշխատենք ցույց տալ, թե աշխատավորների համար տնտեսական ինչպիսի «ազատություն» է ապահովում, այսպես կոչված՝ «ազատ աշխարհը»։

***

Բուրժուական սոցիոլոգներն ու տնտեսագետները կաշվից դուրս են գալիս ապացուցելու, թե մասնավոր սեփականությունն ու կապիտալիստական մրցակցությունն է այն պարարտ հողը, որի վրա խարսխվում են մարդկանց տնտեսական անկախությունն ու ազատությունը։ Իհարկե, դա ճիշտ է, եթե խոսքը միլիոնատերերի, շահագործողների մասին է։ Բայց անառարկելի ճշմարտություն է, որ մասնավոր սեփականությունն ու կապիտալիստական մրցակցությունը մեծ հնարավորություններ, լայն ազատություններ են ընձեռում միլիոնատերերին՝ շահագործելու աշխատավորական զանգվածներին։ Բուրժուական հասարակության գովական «ազատության» երկրներում մի քևում կապիտալիստներն են, մյուսում՝ բանվորները, որոնց նյութական և հոգևոր շահերը, հետևաբար և ձգտումները՝ հակադիր են։ Բնականաբար տարբեր են նաև տնտեսական անկախության, ազատության մասին ունեցած նրանց հասկացությունները։

Իրավաբանորեն, կապիտալի աշխարհում ամեն մարդ իրավունք ունի իր կարողությունների համեմատ ապրելու։ Խոսքով գործազուրկին կամ անօթևանին չեն արգելում օգտվելու ո՛չ շքեղ հյուրանոցների, ո՛չ առափնյա դղյակների ճոխություններից։ Բայց կապիտալի շնորհած «ազատությունների» պայմաններում դա անհնարին է, որովհետև կեղեքվողները տնքում են կարիքի բեռի տակ։ Ահա՛ թե ինչու ազատության մասին բուրժուական գրչակների շաղակրատանքը օճառի պղպջակի նման հօդս է ցնդում։ Այսպես, օրինակ, 1961 թվականի դեկտեմբերի 17-ին Լոնդոնի հազարավոր անապաստաններ, որոնք իրենց թշվառության հետևանքով անկարող էին բնակարան վարձել, փողոց էին շպրտվել. նրանք ցույցի էին ելել և գոչում էին. «Օթևան տվե՛ք մեզ», «մենք մեղավոր չենք։ Մենք ուզում ենք միայն պատսպարվել անձրևից ու ցրտից»։ Իսկ ո՞վ է խանգարում նրանց «պատսպարվել անձրևից ու ցրտից»։ Չէ՞ որ կապիտալիզմը նրանց «ազատություններ» ու «հնարավորություններ» է ընձեռել միլիոնատեր դառնալու համար։ Խոսքով, այդ, իհարկե, այդպես է։

Բայց գործնականում կապիտալիզմը մնում է կապիտալիզմ, իսկ ազատության երազը՝ մի խաբկանք։

Անգլիական պաշտոնական վիճակագրության տվյալներով, 1961 թվականի ընթացքում անօթևանների թիվը (միայն Լոնդոնում) ավելացել է հիսուն տոկոսով. մինչդեռ տների մի մասը դատարկ է՝ խիստ բարձր բնակարանային վարձի պատճառով։ Այսպես է կապիտալիզմի զարգացած երկրում. պատկերացրեք, թե ինչպիսի դրության մեջ են աշխատավորները Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի տնտեսապես թույլ զարգացած կապիտալիստական երկրներում։

Մասնավոր սեփականությունն անսահմանափակ իրավունքներ է շնորհում մոնոպոլիստական ընկերությունների տերերին՝ շահագործելու հարյուր հազարավոր վարձու ստրուկների աշխատանքը, իսկ երբ նրանց աշխատանքից այլևս հնարավոր չէ շահույթ կորզել՝ դուրս շպրտելու փողոց, թողնելով «սատածո ողորմածությանը»։ Մասնավոր սեփականությունը, հատկապես մոնոպոլիստական կապիտալի տիրապետության պայմաններում, չի կարող տնտեսական ազատություն, անկախություն տալ լայն մասսաներին։ Դա մի հրեշ է, որն ագահաբար կլանում է աշխատավոր մարդկանց ջանքերով ստեղծված նյութական բարիքները, նրանց թողնելով աղքատության ճիրաններում։ Ազատության մասին բուրժուազիայի գաղափարախոսների ճոճուն «ֆրազների սատարը,— ասում է Վ. Ի. Լենինը,— կազմում են ապրանքատիրոջ ազատության, կապիտալի ազատության շահերը, որ նա գործադրում է աշխատավոր մասսաներին ճնշելու համար» (Երկեր, հ. 29, էջ 427)։

Իմպերիալիզմի պաշտպանները ճգնում են ապացուցել, թե կապիտալիստական մրցակցությունը մարդկանց տալիս է հավասար հնարավորություններ և դրանով իսկ օգնում բացահայտվելու առավել ընդունակներին, նպաստում ձեռներեցության, եռանդի, նախաձեռնության զարգացմանը։ Իրոք որ, իր կյանքի արշալույսին, կապիտալիզմը պայմաններ ստեղծեց արտադրողական ուժերի զարգացման համար, խթանեց մարդկանց ձեռներեցությունը, եռանդը։ Սակայն նույնիսկ այն ժամանակ միայն առանձին անհատների էր ժպտում բախտը։ Դա սքանչելիորեն ցույց է տվել Ջեկ Լոնդոնը իր երկերում։ Յուրաքանչյուր «հաջողակ» մարդու դիմաց հարյուրավոր «անհաջողակներ» վաղաժամ մեռնում էին ծանր աշխատանքից ու սովից։ Եվ որքան աճեցին ու զարգացան արտադրողական ուժերը, այնքան ավելի խորացավ նրանց և արտադրական հարաբերությունների միջև եղած բախումը։ Ապրանքային մանր արտադրությունն իր տեղը զիջեց խոշոր արդյունաբերությանը։ Ավելի սրվեց արտադրության հանրային բնույթի և նրա արդյունքների մասնավոր յուրացման միջև եղած հակասությունը։ Շահույթի մոլուցքն ավելի այլասեռեց կապիտալի երկրպագուների հոգին։ Աստիճանաբար ավելի հարուստ և ավելի նեղ դարձավ շահագործողների շրջանը։ Դրա փոխարեն ստվարացավ ունեզրկվածների, պրոլետարիատի բանակը։ Ազատ մրցակցության ժամանակաշրջանի հին կապիտալիզմը դարձավ մոնոպոլիստական կապիտալիզմ՝ իմպերիալիզմ։

Բուրժուազիայի ջատագովները թերթերի լեռներ են գրոտել ու գրոտում են, գովերգելով մրցությունը, մասնավոր ձեռներեցությունը, բայց «...կապիտալիզմը վաղուց արդեն ապրանքային մանր ինքնուրույն արտադրությունը, որի ժամանակ մրցությունը կարող էր մի քիչ լայն չափով ձեռներեցություն, եռանդ, նախաձեռնության համարձակություն դաստիարակել, փոխարինել է խոշոր ու



խոշորագույն գործարանային արտադրությամբ, ակցիոներական ձեռնարկություններով, սինդիկատներով և այլ մոնոպոլիաներով։ Այսպիսի կապիտալիզմի ժամանակ մրցությունը նշանակում է բնակչության մասսաների, նրա հսկայական մեծամասնության, աշխատավորների իննսունինը հարյուրերորդականի ձեռներեցության, եռանդի, համարձակ նախաձեռնության անլուր գազանային ճնշում, նշանակում է նույնպես մրցության փոխարինում ֆինանսական խարդախությամբ, բռնակալությամբ, ստորաքարշությամբ՝ սոցիալական սանդուղքի վերևում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 26, էջ 493)։

Այսպիսով, իմպերիալիզմի դարաշրջանում ազատությունը դառնում է մի բուռ միլիարդատերերի մենաշնորհը։ Մարդկանց մի չնչին մասի ազատությունը բացառում է միլիոնների ազատությունը։ Հանրօգուտ ոչ մի աշխատանք չկատարող դասակարգը կուտակել է վիթխարի եկամուտներ, ուղղություն է տալիս իր երկրի քաղաքական կյանքին, ղեկավարում է պետությունը, իսկ մյուսը՝ ժողովրդի ճնշող մեծամասնությունը, զրկված է տնտեսական և քաղաքական իշխանությունից, տանջալից, ծանր աշխատանքով անգամ չի ազատվում թշվառությունից։ Ինչպես ասում է ճապոնացի ժամանակակից ականավոր փիլիսոփա Ցանագիդա Կննձյուրոն՝ «Որքան էլ ազատ ու երջանիկ լինի մեկ մարդը, բայց եթե դրա պատճառով ճզմված է հարյուրավոր ու հազարավոր մարդկանց ազատությունը կամ նրանք բոլորովին զրկված են ազատությունից ու երջանկությունից, ապա այդպիսի ազատությունը չի կարող լինել ամբողջ հասարակության իսկական ազատություն և վերջ ի վերջո այն չի կարող խուսափել ոչնչացումից։ Իսկական, հարատև ազատություն կարող է հաստատվել միայն այն ժամանակ, երբ մեկի ազատությունը զոդված է միլիոնների ազատությանը, իսկ միլիոնների երջանկությունը՝ ձուլված մեկի երջանկության հետ» («Философия свободы», М. 1958, էջ 43)։

Այստեղից էլ այն պարզ հետևությունը, որ ազատության պրոբլեմը դասակարգային բնույթ ունի, ուրեմն և պրոլետարիատը, ժողովրդի ճնշող մեծամասնությունը կարող է կատարելապես ազատ լինել միայն այն դեպքում, երբ կոչնչացվի շահագործող դասակարգի, կապիտալի ազատությունը։ Պատռելով բուրժուական կեղծ «ազատության» դիմակը, Վ. Ի. Լենինն ասել է. «...Ձեր ազատությունը, պարոնայք անգլիացիք, ֆրանսիացիք, ամերիկացիք, խաբեություն է, եթե նա հակասում է կապիտալի ճնշումից աշխատանքի ազատագրությանը։ Դուք մի մանրուք եք մոռացել, պարոնայք քաղաքակիրթներ։ Մոռացել եք, որ ձեր ազատությունը գրված է մի կոնստիտուցիայի մեջ, որն օրինականացնում է մասնավոր սեփականությունը» (Երկեր, հ. 29, էջ 429)։

Այն հասարակարգը, որն օրինականացնում է մասնավոր սեփականությունը, և հիմնված է «ազատ մրցակցության», ուժեղի կողմից թույլին լափելու սկզբունքի վրա, չի կարող ազատ լինել։ Այն չի կարող երկար ժամանակ ժողովրդի մեծամասնությանը պահել կաշկանդված վիճակում։ Այն կյանքը, որն ստիպում է մարդկանց ատել միմյանց, պայքարել իրար դեմ, անհամատեղելի է մարդկային ազատությունների հետ։ Միայն սոցիալիզմն է, որ ոչնչացնելով մասնավոր սեփականությունը, վերացնելով մարդկանց շահագործումը, լայն ու անսահման հնարավորություններ է ստեղծում իսկական ազատության համար։ Մասսայական, համարձակ ձեռներեցություն, աշխատանքային եռանդի հնարավորություն ստեղծում է միայն սոցիալիզմը, «...որտեղ աշխատանքի մարդը,— ինչպես ասում է Վ. Ի. Լենինը,— կարող է իրեն երևան բերել, կարող է

մի քիչ մեջքը շտկել, կարող է ուղղվել, կարող է իրեն մարդ զգալ։ Ուրիշի համար հարյուրամյակներ աշխատելուց, շահագործողների համար հարկադրական աշխատանք կատարելուց հետո, առաջին անգամն է հնարավորություն ստեղծվում իր համար աշխատելու...» (Երկեր, հ. 26, էջ 494—495)։ Հետևաբար, պետք է վերանա կապիտալիզմը և առհասարակ մարդու շահագործումն ու դրանց հիմք հանդիսացող մասնավոր սեփականությունը, որը միշտ եղել է և դեռ շարունակում է մնալ հասարակական անարդարությունների ու կեղեքումների պատվարը, մարդկանց ստրկացման հողը։ Կապիտալիստական աշխարհը չի կարող ազատություն շնորհել ժողովրդական լայն մասսաներին, որովհետև դա հակասում է նրա բուն էությանը՝ վերացնելով մի բուռ կեղեքիչների երջանիկ կյանքի հիմքերը։

Այսպիսով, ազատության պրոբլեմը կապիտալիստական հասարակության որոք ամենից առաջ սոցիալական պրոբլեմ է, որը կարող է լուծվել միայն սոցիալիստական ռևոլյուցիայի միջոցով։

***

Բուրժուական տեսաբանները գովաբանում են կապիտալիստական հասարակարգի շնորհած «տնտեսական ազատությունը», մոնոպոլիստների «առատաձեռնությունից» շլացած, նրանք (օրինակ, ամերիկյան սոցիոլոգներ Լ. Քելսոն և Մ. Ադլերը) ընթերցողներին համոզում են, թե իբր «կապիտալիզմն է, որ խելացի և հետևողական սկզբունքների շնորհիվ ձգտում է իսկական մարդասիրական նպատակի՝ բոլոր մարդկանց համար լավ կյանքի»։ Ըստ էության նրանք չեն ուզում մարդկանց ասել այն ճշմարտությունը, որ կապիտալիստական աշխարհի բնակչության միայն 11 տոկոսն է ապահովված նորմալ սննդով։ Նրանք աչքերը փակում են այն փաստի առջև, որ Լատինական Ամերիկայի բնակչության երկու երրորդի, Աֆրիկայի բնակչության մեծամասնության, Ասիայի հարյուր միլիոնավոր մարդկանց համար սովն ու աղքատությունը մշտական ուղեկիցներ են։ Նույնիսկ տնտեսական զարգացած կապիտալիստական երկրներում՝ այդ թվում նաև ԱՄՆ-ում ու Կանադայում, սովի ուրվականը կախված է «աղետների ենթարկված շրջանների», «քաղաք-ուրվականների» վրա, որոնց բնակչությունն արդյունաբերության մի շարք ճյուղերի կրճատման հետևանքով զրկված է կենսամիջոցներից։ Կապիտալիզմի պաշտպաններն անտեսում են այս փաստերը։

Դետրոյտում, ԱՄՆ-ի արդյունաբերական այդ խոշոր կենտրոնում 207 հազար մարդ, կամ քաղաքի բանվորական ուժի 14 ու կես տոկոսն աշխատանք չունի և «տնտեսական ազատության» բարիքներից վայելում է միայն կարիքն ու սովը։ Իսկ անգլիական «Թայմս» թերթի թղթակիցը, հենց այդ նույն քաղաքում «լավ կյանքի» փոխարեն վախ է տեսել հազարավոր գործազուրկների դեմքին, որոնք ամեն օր հերթի են կանգնում աշխատանքի վարձման գրասենյակների մոտ։ Ահա կապիտալիզմի «տնտեսական ազատությունը»։

Բուրժուազիայի գաղափարախոսները փորձում են տեսականորեն «հիմնավորել այն դրույթները, որ իբր այժմ կապիտալի կենտրոնացումը դադարել է, որ կապիտալը հավասարապես բաշխվում է հասարակության բոլոր անդամների միջև, որ մասնավոր սեփականությունը «դիֆուզիայի» է ենթարկվել և վեր է ածվել կոլեկտիվ սեփականության։ Դրանով իսկ, եզրակացնում են



նրանք, կապիտալիզմը փոխել է իր էությունը, դարձել՝ «ժողովրդական կապիտալիզմ»։ Սակայն այդ ամենը խաբեություն է, առասպել։ Իրականում մոնոպոլիաներն իրենց ձեռքում են կենտրոնացրել հասարակական արտադրության գերակշռող մասը, նրանք անարգել տնօրինում են կապիտալիստական աշխարհի ամբողջ հարստությունը։

Ներկայումս անասելի չափերի է հասել կապիտալի համակենտրոնացումը։ Օրինակ, ԱՄՆ-ում արտադրական ամբողջ ապարատը պատկանում է 200 մոնոպոլիաների։ ԳՖՌ-ում էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ գերիշխում են «Սիմենս» և «ԱԵԳ» կոնցեռնները, իսկ չուգունի ու պողպատի ձուլման 95 տոկոսը կենտրոնացված է 8 կոնցեռններում և երկու պետական ձեռնարկություններում։ Միայն 1961 թվականին Անգլիայում մոնոպոլիստական միավորումները կուլ են տվել 534 ֆիրմա, որոնց ընդհանուր կապիտալը կազմում էր 800 միլիոն ֆունտ ստեռլինգ։ Իսկ անգլիացի միլիոնատեր Չարլզ Քլորը վերջին տասը տարում իր կապիտալները 3-ից հասցրել է 50 միլիոն ֆունտ ստեռլինգի և այժմ էլ շարունակում է անհագորեն կուտակել հանրային աշխատանքով ստեղծված հարստությունը։

Եկամուտների ի՞նչ հավասարեցման, տնտեսական ի՞նչ «ազատության» մասին կարող է խոսք լինել կապիտալիզմի պայմաններում, եթե միլիոնատեր Գետտիի անձնական եկամուտը տարեկան կազմում է 700 միլիոն դոլար, որը հավասար է միջին եկամուտ ունեցող 200 հազար կամ ցածր եկամուտ ունեցող 350 հազար ամերիկյան ընտանիքների եկամուտներին։

Նմանօրինակ բազմաթիվ փաստերի ճնշման տակ նույնիսկ ամերիկյան բուրժուական տնտեսագետ Ռոբերտ Հեյլբրոուներն իր «Ապագան որպես պատմություն» գրքում ժխտում է «ժողովրդական կապիտալիզմի» առասպելը և ընդունում, որ կապիտալի էությունը մնում է անփոփոխ։

Բուրժուական սոցիոլոգներն ու տնտեսագետներն «ապացուցում» են, թե իբր կապիտալիզմի արդի էտապում այլևս չկան շահագործողներ ու շահագործվողներ, որ կապիտալն արդեն առանձին մարդկանց մենաշնորհը չէ։ Էլ ի՞նչ շահագործում, ասում են նրանք, եթե բանվորը միաժամանակ և՛ աշխատավոր է, և՛ սեփականատեր։ Նրանք փորձում են հիմնավորել այդ թեզը՝ վկայակոչելով կապիտալի բաժնետիրական ձևը։

Անգլիացի տնտեսագետ Սեմ Ահարոնովիչն իր «Կառավարող դասակարգը» գրքում ցույց է տալիս, որ կապիտալիզմի բաժնետիրական խեղկատակությունների հետևանքով տնտեսական հզորությունը կենտրոնանում է խոշորագույն ընկերությունների դիրեկտորների ձեռքում։ Այսպես, «Ֆ. Ու. Վուլվորտ» խոշոր ֆիրման ունի 93 հազար բաժնետեր, որոնցից միայն քսանը տիրում են բաժնետոմսերի երկու երրորդին։ Այսպիսով, եզրակացնում է հեղինակը, ձեռնարկությունների բաժնետիրական ձևը ոչ թե թուլացրել, այլ ահռելի չափերով համակենտրոնացրել է արտադրությունն ու կապիտալը մի խումբ մարդկանց ձեռքում։ Բավական է ասել, որ Անգլիայում բնակչության մեկ տոկոսը (հարուստները) տիրում է մասնավոր կապիտալի 43 տոկոսին։ Պարզ է, որ սեփականության բաշխման այդպիսի անհավասարության դեպքում չի կարող լինել եկամուտների հավասարություն, ինչպես պնդում են կապիտալի սպասավորները։ Ո՞ւմ պարզ չէ, որ աշխատավոր մարդը, ձեռք բերելով մի քանի բաժնետոմս, ամենևին էլ չի դառնում սեփականատեր, չի ազատվում շահագործումից։ Վ. Ի. Լենինի բառերով ասած, ավանդատուն մնում է պրոլետար և հար-

կադրված է լինում իր աշխատուժը վաճառել արտադրության միջոցների սեփականատիրոջը։

Կապիտալիզմի պաշտպանները թմբկահարում են, թե բուրժուական աշխարհում վերանում են կենսամակարդակի տարբերությունները, ստեղծվում է «աննշան բլրակներով հարթավայր»։ Մինչդեռ պաշտոնական վիճակագրության տվյալներով ամերիկյան ընտանիքների երեք քառորդը չունի ապրուստի անհրաժեշտ մինիմում։ Ի դեպ, ԱՄՆ-ի վիճակագրությունից դուրս է մնացել լյումպենների, ապադասակարգայնացված տարրերի այն խավը, որին ամեն քայլափոխում կարելի է հանդիպել ԱՄՆ-ի քաղաքների հետնախորշերում, իսկ միլիոնավոր ֆերմերներ, չդիմանալով կապիտալիստական մրցակցությանը, ստիպված լքում են իրենց հողերը, գնում քաղաք՝ է՛լ ավելի ստվարացնելու գործազուրկների բանակը։ Այսպիսին է կապիտալի «հարթավայրում» տիրող «ազատությունը»։ Ուժեղները կուլ են տալիս թույլերին, ուտում, իսկ թույլերը՝ ունեզրկվում, ոչնչանում։ Դա ջունգլիների ազատություն է, սովից մեռնելու ազատություն։

Այս ամենից հետո մոնոպոլիստների կամակատարները մինչև երկինք են բարձրացնում ամերիկյան ապրելակերպը, այն որպես դեղատոմս հրամցնում կապիտալիստական աշխարհի ժողովուրդներին։ Սակայն կապիտալիզմի մռայլ իրականության փաստերը վկայում են, որ չկա ամերիկյան ապրելակերպ, այլ կան ապրելակերպեր՝ միլիարդատերերի, հարուստների և բանվորների, գործազուրկների, ռասայական անլուր հալածանքների պայմաններում իրենց գոյությունը քարշ տվող 18 միլիոն նեգրերի համար։

Խոսելով կապիտալի աշխարհում և, մասնավորապես, Ճապոնիայում ժողովրդի «ազատության» մասին, ճապոնացի փիլիսոփա Յանագիդա Կենձյուրոն ասում է. «...որ նրա մեծ մասը իրականում ամենևին չունի այնպիսի ազատություն, ինչպես պնդում են հրապարակախոսները՝ մեր հասարակարգն անվանելով «ազատ հասարակարգ», իսկ մեր պետությունը՝ «ազատ պետություն», և որ ժողովրդի մեծամասնությունը այնքան է տառապում անազատությունից, դժբախտությունից և անկազմակերպ կյանքից, որ դրանք բառերով չես կարող արտահայտել» («Философия свободы», էջ 106)։

Ներկայումս արևմուտքում գնալով պակասում է այն «քաջերի» թիվը, որոնք լրջորեն կհամարձակվեն պնդել, թե բուրժուական նույնիսկ ամենահարուստ երկրներում տնտեսական պրոբլեմները լուծված են և աշխատավոր ժողովուրդը բարեկեցիկ կյանք է վայելում։ Նույնիսկ պրեզիդենտ Քենեդին հարկադրված խոստովանում է, որ ԱՄՆ-ում «մոտավորապես 5 և կես միլիոն գործազուրկներ կան», որ «1951 թվականից հետո ֆերմերների եկամուտները կրճատվել են 25 տոկոսով», «25 միլիոն ամերիկացիներ դեռևս ապրում են... այնպիսի բնակարաններում, որոնք չեն համապատասխանում նորմաներին»։ «Միջնակարգ դպրոցի ամենաբազմախոստում շրջանավարտների մեկ երրորդը չի կարող ուսումը շարունակել՝ դրամական դժվարությունների պատճառով», բժշկության նվաճումները «չափազանց շատ մարդկանց համար անհասանելի են՝ անբավարար եկամուտների պատճառով» և այլն։

Եթե «ազատ աշխարհն» իրոք այնպիսին լիներ, ինչպես այն ռեկլամում են բուրժուական տեսաբաններն ու մամուլը, ապա կապիտալիզմը չպետք է վախենար և առանց վարանելու պետք է ընդուներ սոցիալիզմի խաղաղ կոչը՝ մրցել արտադրողական ուժերի զարգացման և ժողովրդի կենսամակարդակի



բարձրացման ասպարեզում։ Բայց կապիտալիստները սարսափում են այդ մրցությունից։ Օրեցօր առնականացող սոցիալիզմի լագերը, նրա աճող տնտեսական հզորությունը տագնապ են հարուցում իմպերիալիստական շրջաններում։ Բուրժուական պրոպագանդան այլևս չի կարող ժխտել սոցիալիզմի երկրների պատմական նվաճումները՝ էկոնոմիկայի և կուլտուրայի բնագավառում։ Եվ, որքան ակնհայտ ու անվիճելի են դառնում սոցիալիստական սիստեմի առավելությունները, այնքան ավելի են սարսափում կապիտալիստները, ավելի են բորբոքում հակակոմունիզմի կրակը, կարծելով, թե դրանով կարող են կասեցնել կոմունիզմի գաղափարների հաղթարշավը, կաշկանդել կապիտալի լծի տակ տառապող աշխատավոր մասսաների ազատության ձգտումը։

Իմպերիալիստները տագնապի մեջ են, նրանք պատեպատ են զարնվում, ելք են որոնում իրենց համար ստեղծված ծանր կացությունից։ Եվ մի՞թե այդ տագնապի վկայությունը չեն Կուբայի ժողովրդի դեմ ուղղված ԱՄՆ-ի իմպերիալիստների ագրեսիվ գործողությունները։ Մի՞թե փոքրիկ Կուբան այնպիսի ռազմական ուժ ունի, որ կարող է ոչնչացնել Միացյալ Նահանգները։ Իհարկե, ոչ։ Տապալելով շահագործողների իշխանությունը, թոթափելով կապիտալի շղթաները Կուբայի ժողովուրդը կերտում է իր ազատությունն ու երջանկությունը, և այդ դուր չի գալիս կապիտալիստներին, որովհետև Կուբայի բանվորի ու գյուղացու օրինակը հեղափոխիչ ազդեցություն է գործում Ամերիկայի մայր ցամաքի բոլոր ժողովուրդների վրա։

ԱՄՆ-ի սենատի դեմոկրատական մեծամասնության լիդեր Մենսֆիլդը ամերիկյան մի խումբ կոնգրեսմենների հետ 1961 թվականի վերջերին երեքշաբաթյա ուղևորություն է կատարել Լատինական Ամերիկայի երկրներում։ Այդ առթիվ 1962 թվականի փետրվարի 12-ին հրապարակված զեկուցման մեջ նա գրել է. «Լատինական Ամերիկան մի շրջան է, որտեղ մեծ տոկոս են կազմում անգրագետները։ Դա մի շրջան է, որտեղ միլիոնավոր մարդիկ գրեթե չեն օգտվում ժամանակակից կյանքի նյութական բարիքներից։ Դա մի շրջան է, որտեղ միլիոնավոր մարդիկ չեն ստանում բժշկական ոչ մի օգնություն, որտեղ շատ բարձր է երեխաների մահացությունը։ Դա մի շրջան է, որտեղ միլիոնավոր մարդիկ, որոնք սնանկացել ու դուրս են շպրտվել գյուղական շրջաններից, գնում են քաղաք և ապրում սարսափելի աղքատության մեջ»։

Վերլուծելով լատինա-ամերիկյան երկրների տնտեսական ու քաղաքական պայմանները, Մենսֆիլդը հանգում է այն հետևության, որ աշխարհի այդ մասում անխուսափելի են ցնցումներն ու փոփոխությունները: «Եթե փոփոխություններ չկատարվեն,— եզրակացնում է նա,— ապա հազիվ թե հույս լինի, որ Լատինական Ամերիկայի ժողովուրդները համբերատար կերպով կտանեն գոյություն ունեցող պայմանները... Ավելի շուտ կգործադրվեն ռազմատենչ ջանքեր՝ ռևոլյուցիոն միջոցներով փոփոխությունների հասնելու համար»։ Ահա թե ինչից են վախենում ԱՄՆ-ի իմպերիալիստները և ինչու են նրանք համաշխարհային ռեակցիայի գլուխ կանգնած, ուժեղացնում հակակոմունիզմը. ագրեսիա նախապատրաստում Կուբայի դեմ, ցանկանալով նրա ժողովրդին զրկել արյան գնով ձեռք բերված ազատությունից։

* * *

Ազատություններից ամենակարևորը աշխատելու իրավունքն է, որը պետք է ունենան բոլորը։ Աշխատանքն է ստեղծում ապրուստի միջոցներ, շահագոր-

ծումից զերծ աշխատանքն է մարդու ազատության գլխավոր երաշխիքը։ Իսկ բուրժուական հասարակարգը չի կարող ժողովրդական լայն մասսաներին ապահովել այդպիսի աշխատանքով։ Ահա թե ինչու «Բուրժուական կարգերում (այսինքն՝ քանի դեռ մնում է հողի և արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը) և բուրժուական դեմոկրատիայում «ազատությունը և հավասարությունը» մնում են միայն ձևական, իրականում նշանակելով բանվորների (ձևականորեն ազատ, ձևականորեն իրավահավասար) վարձու ստրկություն և կապիտալի ամենազորություն, կապիտալի ճնշում աշխատանքի վրա» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 464)։ Այստեղ բանվորը ձևականորեն ազատ է, նա կարող է իր աշխատուժը վաճառել կամ չվաճառել։ Այսինքն՝ նրա համար կա երկու ելք՝ կամ մի կերպ իր գոյությունը քարշ տալ, կամ մեռնել սովից։ Պարզ է, որ բանվորն ստիպված ընտրում է առաջինը։ Կապիտալիզմի զարգացման տընտեսական օրենքներն այնպիսին են, որ անխուսափելիորեն առաջացնում են գործազուրկների հսկայական բանակ, կաշկանդում աշխատանքի ազատությունը։ Այն հասարակությունը, որը մարդկանց զգալի մասին զրկում է աշխատելու իրավունքից, չի կարող ազատ լինել։

Կապիտալիզմի մշտական ուղեկիցը՝ գործազրկությունը, մեծ չարիք է աշխատավոր զանգվածների համար։ Օրինակ, գործազրկությունը Ճապոնիայում կազմում է արտադրության մեջ աշխատողների ընդհանուր թվի 10 տոկոսը։ Դրա մեջ չեն մտնում, իհարկե, կիսագործազուրկները, որոնք օրեցօր համալրում են այդ բանակը։

Արտադրական ոլորտում կապիտալի աճի դանդաղեցման տենդենցն աշխատավոր մասսաների համար կբերի նորանոր աղետներ ու զրկանքներ։ Այդ մասին տագնապով են խոսում բուրժուազիայի ջատագովները։ Այսպես, ամերիկյան հայտնի տնտեսագետ, սենատոր Քեյզերլինգը նշում է, որ 1953-ից մինչև 1960 թվականը գործազրկության և արտադրական կարողությունների զգալի մասի չօգտագործման հետևանքով ԱՄՆ-ը կորցրել է մոտավորապես 18,5 միլիոն մարդ—տարի աշխատաժամանակ և ավելի քան 260 միլիարդ դոլարի արտադրանք։ Եթե այդպես շարունակվի, ասում է Քեյզերլինգը, ապա գործազուրկների թիվը 1965 թվականին կհասնի 9 միլիոնի, իսկ ազգային համախառն արդյունքը այդ նույն տարում 120 միլիարդ դոլարով կպակասի։ Ահա թե ինչպիսի հեռանկար, աշխատանքի ինչպիսի «ազատություն» է սպասում ԱՄՆ-ի աշխատավորներին։

Բուրժուական «ազատ աշխարհում» գործազրկությունից ամենից շատ տուժում են սևամորթները։ ԱՄՆ-ում նեգր գործազուրկների միջին տոկոսը գրեթե 2 անգամ ավելի է, քան սպիտակամորթներինը։ Մի շարք խոշոր քաղաքներում նեգրերի գործազրկությունը հասել է ահավոր չափերի։ Օրինակ, Պիտսբուրգում 1961 թվականին այն կազմում էր 24 տոկոս, Ֆիլադելֆիայում՝ 28, Դետրոյտում՝ 39, իսկ Ինդիանա նահանգի Սաութ-Բենդե քաղաքում՝ 71 տոկոս։ Էլ ի՞նչ ազատություն, որի հիմքում ընկած է ռասայական խտրականությունը, եթե աշխատելու իրավունքը պայմանավորված է նաև մարդկանց գույնով։ Սա արդեն ազատություն չէ, այլ նրա ծաղրանկարը, որովհետև ռասիզմն ու ազատությունն անհամատեղելի հասկացություններ են։

Կապիտալիզմի պայմաններում գիտության ու տեխնիկայի նվաճումները նա բերում են գործազրկություն, աշխատանքի անապահովվածություն։ Մարդկության հիանալի նվաճումը՝ արտադրության ավտոմատացումը, աշ-



խատավորներին դարձնում է ավելորդություն, անասելի չափերի է հասցնում գործազրկությունը, սրում կապիտալիզմի հակասությունները։ Տեխնիկայի կատարելագործման և ավտոմատացման պատճառած աղետների մասին տագնապով են խոսում նույնիսկ բուրժուական գործիչները։ ԱՄՆ-ի աշխատանքի մինիստրի տեղակալ Ուիլլարդ Ուիրտցը հայտարարել է, որ երկրում «սուր կերպով է դրված արտադրության ավտոմատացման հետևանքով առաջացած գործազրկության պրոբլեմը»։ Օրինակ, ամերիկյան պաշտոնական տվյալներով 1950-ից մինչև 1961 թվականը երկաթուղային տրանսպորտում աշխատող բանվորների ու կառուցողների թիվը կրճատվել է 430 հազար մարդով, իսկ ածխահատներինը՝ 1949 թվականի համեմատությամբ, երկու երրորդով։

Եվ, քանի դեռ չի վերացված կապիտալիզմի հիմնական հակասությունը՝ արտադրության հասարակական բնույթի և նյութական բարիքների յուրացման մասնավոր կապիտալիստական ձևի միջև եղած հակասությունը, քանի դեռ չի վերացված կապիտալիզմը, աշխատանքը չի կարող ազատ լինել։ Աշխատանքի ու կապիտալի համագործակցությունը ձեռնտու է միայն կապիտալիստներին։ Ինչպես Կ. Մարքսն է ասում՝ «...աշխատանքը հարուստների համար արտադրում է հիանալի առարկաներ, բայց և այն էլ առաջացնում է բանվորների աղքատացում։ Այն ստեղծում է պալատներ, բայց միաժամանակ և հետնախորշեր՝ բանվորների համար։ Այն կերտում է գեղեցկություն, բայց և այլանդակում է բանվորին...» (К. Маркс и Ф. Энгельс, Из ранних произведений, էջ 562)։ Բանվորներն, իհարկե, չեն կարող հաշտվել այդ ամենի հետ։ Ուստի պատահական չէ, որ այդ երկու հակամարտ ուժերի հարաբերությունները հետզհետե ավելի են սրվում։ Դա կախված է ո՛չ թե բանվորների սուբյեկտիվ ցանկություններից, այլ օբյեկտիվ օրենք է, որն անխուսափելիորեն բխում է կապիտալիստական հասարակարգի տնտեսական կառուցվածքից։ Եվ որքան ուժեղանում են մասսաների ճնշումն ու շահագործումը, այնքան ավելի է սրվում անհաշտությունը, բարձրանում ունեզրկվածների ազատության ինքնագիտակցումը։

Աշխատավոր մարդը դասակարգային կռվի փորձով համոզվում է, որ ազատության հասնելու համար պետք է վերացնել կապիտալի սոցիալական անարդարությունները, տապալել նրա քաղաքական իշխանությունը։ Տնտեսական և սոցիալական ազատություն (նաև խոսքի, մամուլի, ժողովների, բարոյական և այլն) չի կարելի նվաճել առանց քաղաքական ազատությունների։ Իսկ դրանք չեն կարող լինել այն հասարակարգում, որ մարդկանց զրկում է տնտեսական ազատությունից։ Քանի դեռ գոյություն ունի կապիտալիզմը, շահագործողները դիմելով ամեն միջոցի, կաշխատեն պահպանել այն հասարակարգը, որտեղ նրանք օգտվում են բոլոր արտոնություններից։ Նրանք օրենքից դուրս են հայտարարում կոմպարտիաները, հետապնդում են առաջադիմական կազմակերպություններին, խաղաղության կողմնակիցներին, միլիտարիզմի ու ռեակցիայի հակառակորդներին։ Ահա թե ինչու կապիտալի աշխարհում ավելի ու ավելի են բորբոքվում դասակարգային մարտերը։ Բավական է ասել, որ կապիտալիստական երկրներում, 1960 թվականին, միայն քաղաքական գործադուլներին մասնակցել է ավելի քան 41 միլիոն մարդ։

«Այժմ բուրժուազիան սկսում է դողալ,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— որովհետև նրա այսպես կոչված «ազատ աշխարհը» բանվոր դասակարգի հարվածներից, սոցիալիստական երկրների զարգացման հաջողությունների ուժից

սկսում է ճարճատել։ Եվ նա ճարճատելու է ոչ թե մեր հրթիռների հարվածներից, այլ բանվոր դասակարգի, աշխատավորների, միլիոնավոր մասսաների աճող գիտակցության, իրենց պարտքի նկատմամբ բանվոր դասակարգի, աշխատավոր ժողովրդի գիտակցական վերաբերմունքի հարվածներից» (Աշխարհն առանց զենքի—աշխարհն առանց պատերազմների, Հայպետհրատ, 1960, էջ 554)։

***

Աշխատավոր մարդուն շահագործում է ոչ միայն «սեփական» կապիտալիստը, որին նա վաճառել է իր աշխատուժը, այլև կապիտալիստական պետությունը, որը մեծաթիվ հարկեր է գանձում աշխատավորներից։ Կապիտալիստական պետության բյուրոկրատական ապարատի մեծացման և սպառազինությունների մրցավազքի հետ զուգընթաց ավելանում են այդ հարկերը։ Միացյալ Նահանգների 1961/62 ֆինանսական տարվա բյուջեի յուրաքանչյուր դոլարի 59 ցենտը հատկացված է ռազմական նպատակներին։

Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը, նշվում է ՍՄԿՊ Ծրագրում, չլսված չափերով ուժեղացնում է միլիտարիզմը, ռազմական ծախսերը կլանում են պետական բյուջեի մեծ մասը։ Իմպերիալիստական պետությունները վերածվում են միլիտարիստական, ռազմա-ոստիկանական պետությունների, ռազմականացումն ընդգրկում է բուրժուական հասարակության կյանքը։ Այդ ամենն ավելի են վատթարացնում աշխատավորական մասսաների կենսապայմանները։ Աշխատավոր մարդը տնքում է անընդհատ աճող հարկերի տակ։ Բուրժուական պետությունը շահագրգռված չէ և չի կարող «տնտեսական ազատություն» տալ, նյութական բարեկեցություն ստեղծել բնակչության մեծամասնության համար, որովհետև, ինչպես գրում է ամերիկյան ժուռնալիստ Ֆրեդ Կուկը, Քեննեդիի կառավարության ջանքերի հիմնական մասը, իսկ գործնականում գրեթե բոլոր ջանքերը, ռազմական ուղղություն ունեն և այդ ցավալի փաստը չի կարելի անտեսել։

Բուրժուական պետությունը կոչված է պաշտպանելու շահագործողների ազատությունը, բարեկեցիկ և ապահով կյանք ստեղծելու կապիտալիստների համար։ Բայց ազատություն կարող է լինել միայն այն հասարակարգում «...որտեղ այլևս բնավ չեն լինի ո՛չ դասակարգային տարբերություններ, ո՛չ անհատական գոյությունը պահպանելու միջոցների հոգսեր, և միայն որտեղ առաջին անգամ խոսք կարող է լինել իսկական մարդկային ազատության մասին...» (Ֆ. Էնգելս, Անտի-Դյուրինգ, էջ 152)։ Իսկ կապիտալի աշխարհն իր «ազատություններով» ու «ճշմարտություններով» երբեք չի կարող ապահովել դրանք, որովհետև կապիտալիզմն իր բուն էությամբ բացառում է աշխատավոր մարդու ազատությունը։

---

# ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ԿԱԴՐԵՐԻ ՊԱՏՐԱՍՏՈՒՄԸ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅՈՒՄ


## Ս. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին առընթեր պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության գլխավոր վարչության պետ


Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի Պետպլանի նախնական հաշվարկներով ռեսպուբլիկայի ազգաբնակչության թիվն առաջիկա քսան տարում ավելանալու է երկու անգամ։ Կրկնապատկվելու է նյութական բարիքների արտադրության ոլորտում աշխատողների թիվը։

Մեծ չափով զարգանալու են ռեսպուբլիկայի արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունը։ Ժողովրդական տնտեսության այդ հիմնական ճյուղերը պահանջում են բազմաթիվ որակյալ կադրեր, լավ մասնագետներ, որոնք կարողանան ղեկավարել ժամանակակից բարդ մեքենաներն ու մեխանիզմները։

Ռեսպուբլիկայում որակյալ բանվորական կադրերի պատրաստման պլանները սերտորեն առնչվում են ժողովրդական տնտեսության զարգացման ընթացիկ և հեռանկարային պլանների հետ։ Ժամանակակից արտադրության կատարելագործված սարքավորումները, ավտոմատացումը, մեքենայացումը նոր, ավելի բարդ պահանջներ են ներկայացնում որակյալ բանվորական կադրերին՝ վերազանց տիրապետել ընտրած մասնագիտությանը, ձեռք բերել ինժեներատեխնիկական աշխատողի որոշ գիտելիքներ։

Որակյալ բանվորների շարքերը մեր երկրում հիմնականում համալրվում են պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության սիստեմի ուսումնական հաստատություններից, արտադրական ուսուցմամբ հանրակրթական դպրոցներից, ինչպես նաև արտադրության մեջ պատրաստվող կադրերից։

Մեր ռեսպուբլիկայում որակյալ բանվորական կադրերի պատրաստման կարևորագույն օղակներից մեկը պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնական հաստատություններն են, որոնք մեծ դեր են խաղում երիտասարդության պրոֆեսիոնալ պատրաստականության և կոմունիստական դաստիարակության գործում։ Բավական է ասել, որ Հայաստանի պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանները ռեսպուբլիկայի արդյունաբերությանն ու գյուղատնտեսությանը տվել են ավելի քան 70 հազար որակյալ բանվորներ, գյուղատնտեսության մեխանիզատորներ։ Ռեսպուբլիկայում գրեթե չկա այնպիսի արդյունաբերական ձեռնարկություն, կոլտնտեսություն կամ սովխոզ, որտեղ չաշխատեն պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններն ավարտած մասնագետներ։ Նրանցից շատերը իրենց հայրենանվեր, անբասիր աշխատանքով արժանացել են Սովետական Միության բարձր պարգևների և կոչումների։ Արդյունաբերության ու

շինարարության բուռն զարգացման հետ միասին առանձնապես աճել ու հասակ է առել մեր հերոսական բանվոր դասակարգը։ 1960 թվականին ռեսպուբլիկայի արդյունաբերության, տրանսպորտի, շինարարության մեջ զբաղված բանվորների թիվը հասնում էր ավելի քան 200 հազար մարդու։ Այդ 40 անգամ գերազանցում էր 1913 և 3 անգամ 1940 թվականին Հայաստանի արդյունաբերության մեջ զբաղված բանվորների թիվը։ Չնայած դրան, այժմ նախատեսվում են որակյալ բանվորական կադրերի պատրաստման առավել մեծ տեմպեր, որպեսզի աճող արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունն ապահովեն նոր, բարդ մասնագիտության որակյալ կադրերով։ ՍՄԿԿ Ծրագրում ասված է, որ «Գիտության և տեխնիկայի բուռն զարգացման կապակցությամբ պետք է անընդհատ կատարելագործել պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության և արտադրական ուսուցման սիստեմը, այն հաշվով, որ արտադրության մեջ աշխատողների վարպետությունը զուգորդվի հասարակական և բնական գիտությունների բնագավառում նրանց հանրակրթական պատրաստության բարձրացման ու ինժեներա-տեխնիկական, ագրոնոմիական, բժշկական կամ այլ մասնագիտական գիտելիքներ ստանալու հետ» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, Հայպետհրատ, 1962 թ., էջ 247)։

Այդ առումով նոր, առավել պատասխանատու խնդիրներ են դրվում պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնական հաստատությունների առջև՝ կատարելագործել պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության սիստեմը, ապահովել որակյալ բանվորական կադրերի պատրաստումը ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների համար։

Այժմ վերակառուցվում է պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության սիստեմը։ Այն հիմնականում կառուցվում է ութամյա դպրոցի միասնական բազայի վրա։ Բոլոր տիպի պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնական հաստատությունները վերակազմվում են միասնական պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների։ Այդ վերակառուցումը կկատարվի 1963 թվականին։

ՍՄԿԿ Ծրագիրը, XXII համագումարի որոշումները պահանջում են ամենաարագ տեմպերով իրականացնել մեր արդյունաբերության, տրանսպորտի, գյուղատնտեսության, շինարարության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը, որպեսզի քսան տարվա ընթացքում լիովին վերացվի ձեռքի աշխատանքը, ինչպես հիմնական, այնպես էլ օժանդակ օպերացիաներում։ Սակայն սխալ կլիներ կարծել, որ արտադրության մեքենայացման ու ավտոմատացման հետևանքով նսեմանում է մարդու աշխատանքը։

Էական փոփոխություններ տեղի կունենան բանվորների պրոֆեսիոնալ կազմի, նրանց պատրաստականության բնույթի մեջ։ Վերակառուցվում և կատարելագործվում են նաև պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության սիստեմը, հանրակրթական և արտադրական ուսուցման ձևերն ու մեթոդները։ Պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում ուսումնա-դաստիարակչական աշխատանքը տարվում է այնպես, որ երիտասարդությունն ակտիվ մասնակցի արտադրական աշխատանքին, սերտ կապ պահպանելով ձեռնարկությունների, նա-ռույցների, սովխոզների ու կոլտնտեսությունների գործնական աշխատանքի հետ։ Սովորողների մասնագիտական որակի բարձրացման առաջնահերթ նախապայմանն արտադրական ուսուցման և արտադրական պրակտիկայի ճիշտ կազմակերպումն է, սովորողներին արտադրական աշխատանքի մեջ անմիջականորեն ներգրավելը։



Բազային գործարանը, ֆաբրիկան արտադրական պրակտիկայի հիմնական վայրերն են։ Սակայն բազային ձեռնարկություններում հաճախ արտադրական պրակտիկայի ընթացքում պրոֆեսիոնալ ուսումնարանների սովորողներին նայում են որպես լրացուցիչ աշխատանք կատարող բանվորների և հոգ չեն տանում նրանց հիմնական բանվորական տեղերով ապահովելու մասին։ Մինչդեռ յուրաքանչյուր բազային ձեռնարկության ղեկավար պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանի սովորողներին պետք է դիտի որպես վաղվա որակյալ բանվորների, որոնք պետք է փոխարինեն ավագ ընկերներին և նյութական բարիքներ ստեղծեն մեր Հայրենիքի համար։ Ժամանակն է, որ բազային ձեռնարկությունների գլխավոր ինժեներների վրա դրվի պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսուցման ղեկավարության պատասխանատվությունը։

Ռեսպուբլիկայի բուռն զարգացող արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունն առաջիկայում պահանջում են տարբեր պրոֆեսիաների բազմաթիվ կադրեր։ Միայն ընթացիկ յոթնամյակում պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնական հաստատությունները կպատրաստեն 34 հազար որակյալ բանվորներ։ Սակայն ռեսպուբլիկայի արդյունաբերությունը պահանջում է ավելի շատ որակյալ բանվորներ։ Այսպես, օրինակ, 1962—1970 թվականներին Ժողտնտխորհրդի գունավոր մետալուրգիայի վարչությանը ենթակա արդյունաբերական ձեռնարկություններին, նախնական տվյալներով, անհրաժեշտ են մոտ 5000 որակյալ բանվորներ, թեթև արդյունաբերության ձեռնարկություններին՝ ավելի քան 20 հազար, էլեկտրատեխնիկական արդյունաբերությանը՝ 23 հազար, հաստոցաշինական և մեքենաշինական ձեռնարկություններին՝ մոտ 24 հազար, քիմիական արդյունաբերությանը՝ 6500 որակյալ բանվորներ և այլն։ Մեծ թվով բանվորական կադրեր են պահանջում սննդի, տեղական արդյունաբերության և մյուս ձեռնարկությունները։

Ռեսպուբլիկայում արդյունաբերության նոր ճյուղերի արագ զարգացումը հրամայական պահանջ է դնում ընդլայնելու բանվորական կադրերի պատրաստման շրջանակները։ Այսպես, օրինակ, լեռնային արդյունաբերության համար որակյալ հանքափորներ և այլ մասնագիտությամբ բանվորական կադրեր պատրաստելու համար այս տարի կազմակերպվեցին նոր պրոֆեսիոնալ ուսումնարաններ՝ Ագարակի պղնձա-մոլիբդենի և Ղափանի պղնձի կոմբինատներին կից։ Մոտակա երկու տարվա ընթացքում պետք է պատրաստել մոտ 500 որակյալ բանվորներ Ագարակի կոմբինատում աշխատելու համար։ Միջոցառումներ են մշակված հատկապես առաջիկա տարիներին շահագործման հանձնվող գործարաններն ու ֆաբրիկաները որակյալ բանվորական կադրերով ապահովելու ուղղությամբ։

Մոտակա մեկ-երկու տարում շահագործման են հանձնվելու մի շարք խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ, ինչպես, օրինակ՝ Կիրովականի արհեստական մետաքսաթելի գործարանը, որտեղ աշխատելու են մի քանի հազար որակյալ բանվորներ։ 1960—1961 ուսումնական տարում վերոհիշյալ գործարանի բազայի վրա բացվել է Կիրովականի № 5 պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանը, որտեղ սովորում են ավելի քան 600 աղջիկներ ու պատանիներ։ Նրանք հիմնականում ունեն հանրակրթական միջնակարգ կրթություն։ Ինչպես հայտնի է, մեզ մոտ՝ Հայաստանում, դա առաջին գործարանն է՝ յուրահատուկ տեխնոլոգիական պրոցեսներով։ Այդ բնագավառում կադրեր մենք գրեթե չունենք։ Ինչպես միշտ, այնպես էլ այս անգամ, մեզ օգնության

եկան ՌՍՖՍՌ-ի համապատասխան գործարանների կոլեկտիվները։ Օրինակ, Մոսկվայի մարզի Սերպուխով քաղաքի արհեստական մետաքսաթելի գործարանը երկու տարի անընդհատ իր մոտ արտադրական պրակտիկայի է ընդունում Կիրովականի պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանի սովորողներին։ Սերպուխովի գործարանի ինժեներա-տեխնիկական կազմը, բանվորներն ու բանվորուհիները սիրով են օգնում նրանց՝ որակավորվելու իրենց մասնագիտության մեջ։ Կիրովականի արհեստական մետաքսաթելի գործարանը 1962 թվականին շահագործման հանձնելիս լրիվին ապահովված կլինի որակյալ բանվորներով։

Ձեռնարկված է Հրազդանի լեռնաքիմիական հսկա կոմբինատի շինարարությունը։ Այստեղ բացվելու է երկու ուսումնարան, որտեղ պետք է պատրաստվեն որակյալ բանվորական կադրեր՝ շինարարության, ինչպես նաև այդ կոմբինատում աշխատելու համար։

Սովետական Հայաստանի գրեթե ամեն մի բնակավայրում, հատկապես Երևան, Լենինական, Կիրովական քաղաքներում տարեցտարի ծավալվում է շինարարությունը, կարիք է զգացվում բազմաթիվ շինարար բանվորների։ Այժմ ռեսպուբլիկայում գործում են շինարարական բանվորական կադրեր պատրաստող երեք ուսումնարաններ՝ Երևանում, Քաջարանում և Արթիկում, որոնք տարեկան տալիս են 300 որակյալ քարտաշ-որմնադիրներ, հյուսներ, ատաղձագործներ, քարհատ մեքենաների վրա աշխատող մասնագետներ։ Բայց այդ չի բավարարում ռեսպուբլիկայի շինարարության հարաճուն պահանջները։

Նախատեսվում է մինչև յոթնամյակի վերջը շինարարական նոր ուսումնարաններ բացել Երևանում, Լենինականում, Կիրովականում, Հրազդանում, Վեդու շրջանի Արարատ բանավանում, այն հաշվով, որ ռեսպուբլիկայի շինարար բանվորների թիվը ամեն տարի 2000-ով ավելանա։

Զգալի աշխատանք է կատարվում ռեսպուբլիկայի թեթև և, հատկապես, տեքստիլ, տրիկոտաժ, մետաքսագործական և նուրբ մահուդի գործարանները բանվորական կադրերով ապահովելու ուղղությամբ։ Արդյունաբերական այդ ճյուղերում առաջիկա տասնամյակում կպահանջվի մոտ 15 հազար բանվոր։

Այժմ պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններ են գործում Վ. Ի. Լենինի անվան Երևանի մետաքսի, Երևանի բրդյա նուրբ մահուդի կոմբինատների, Լենինականի տեքստիլ կոմբինատի, տրիկոտաժ գործարանի բազայի վրա։ Այդ ուսումնարանները տարեկան տալիս են 750 մասնագետներ, այդ թվում՝ ջուլհակներ, ենթավարպետներ, մանող-գործող բանվոր-բանվորուհիներ, փականագործներ, ավտոմատ գծեր կարգավորող փականագործներ և այլն։

Նախատեսված է ընդարձակել այդ տիպի ուսումնարանների ցանցը այն հաշվով, որպեսզի յոթնամյակի վերջում բավարարվի տեքստիլ, տրիկոտաժ և մետաքսագործական արդյունաբերության՝ որակյալ բանվորական կադրերի պահանջը։

Ոսկու արդյունաբերության զարգացման, նրա արդյունահանման ու մշակման համար անհրաժեշտ են մեծ թվով մասնագետներ։ Պետք է պատրաստել բոլորովին նոր մասնագիտությամբ բանվորական կադրեր, որպիսիք մինչև այժմ Հայաստանի ուսումնական հաստատությունները չեն տվել։ Ընթացիկ



տարում Բասարգեչարի շրջանի ոսկեհանքային կոմբինատին կից կստեղծվի պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարան։

Արդյունաբերության ավտոմատացման ու մեքենայացման առաջընթացի շնորհիվ արմատապես փոխվում է նաև բանվորական կադրերի պրոֆեսիոնալ կազմը։ Անհետանում են ժամանակին իրենց դրական դերը կատարած մասնագիտությունները և առաջանում են նոր մասնագիտություններ։ Կիբեռնետիկայի, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների լայն կիրառումը արդյունաբերության տարբեր ճյուղերում, հաշվային տեխնիկայի զարգացումը խնդիր են դնում արմատապես վերակառուցելու նաև պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնական հաստատությունների գործունեությունը՝ ժամանակակից բարդ պրոֆեսիաների տեր բարձրորակ բանվորական կադրեր պատրաստելու համար։

Այդ ուղղությամբ Սովետական Հայաստանում կատարված են առաջին քայլերը։ 1961 թվականին Ժողտնտխորհի Երևանի մաթեմատիկական հաշվիչ մեքենաների փորձնական գործարանի բազայի վրա ստեղծվեց նոր պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարան, որտեղ պատրաստվում են՝ գործիքագործ-փականագործներ, հաշվիչ մեքենաներ հավաքողներ, էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ մոնտաժողներ և այլ մասնագետներ։

Ուսումնական հաստատություններում 1960 թվականից սկսած պատրաստվում են ռադիո և էլեկտրամեխանիկական սարքերի մեխանիկ հավաքողներ, պողպատյա կոնստրուկցիաներ հավաքող-մոնտաժողներ, տրոլեյբուսի էլեկտրասարքավորումներ վերանորոգող փականագործներ, քարհատ մեքենաների մեքենավարներ, ջուլհակներ, մանողներ և այլն։

Այժմ ռեսպուբլիկայի պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանները պատրաստում են որակյալ բանվորական կադրեր՝ 75 մասնագիտությունների գծով։ Մինչդեռ արդյունաբերությունը պահանջում է կադրեր՝ մոտ 200 մասնագիտությունների գծով։

Յոթնամյակի ընթացքում բանվորական կադրերի պատրաստման պլանը չի կարող բավարարել արդյունաբերության ու գյուղատնտեսության պահանջները։ Նախնական հաշվարկներով ռեսպուբլիկայի պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանները 34 հազարի փոխարեն յոթնամյակի ընթացքում պետք է պատրաստեն մոտ 70 հազար որակյալ բանվորներ, որպեսզի մինիմալ չափով բավարարեն ռեսպուբլիկայի ինչպես նորակառույց, այնպես էլ գործող ձեռնարկությունների՝ բարդ մասնագիտությունների տեր բանվորական կադրերի պահանջը։

Այդ նկատառումներով նախատեսված է յոթնամյակի վերջին պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնական հաստատությունների թիվն այժմյան 28-ից հասցնել 50-ի։ Նորակառույց խոշոր գործարաններին ու ֆաբրիկաներին, սովխոզներին կից կստեղծվեն նոր ուսումնարաններ։

Լայն աշխատանք է ծավալվում բնակչության կենցաղային կարիքները սպասարկելու համար մասնագիտական կադրեր պատրաստելու ուղղությամբ։ Տարեցտարի ավելանում է այն ընտանիքների թիվը, որոնք ունեն էլեկտրասառցարաններ, հեռուստացույցներ, լվացքի, փոշեծծիչ, պարկետ մաքրող և կուլտուր-կենցաղային այլ էլեկտրամեքենաներ։

Ռեսպուբլիկայում յոթնամյակի ընթացքում կավարտվի բոլոր բնակավայրերի համատարած էլեկտրիֆիկացումը։ Այժմ էլեկտրականությունը մուտք է

գործել գրեթե ամեն մի ընտանիք։ Այս ամենին պետք է ուղեկցի պատշաճ հոգատարությունը մասնագիտական կադրերի պատրաստման նկատմամբ։ Առաջին քայլերն այդ ուղղությամբ արդեն արվել են։ Երևանի № 2 տեխնիկական և Լենինականի № 3 պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում բացված է հեռուստացույցներ վերանորոգող փականագործների բաժանմունք, որտեղ սովորում են 75 պատանիներ ու աղջիկներ։ Լենինականի № 3 պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանում բացված է էլեկտրասառցարաններ, լվացքի և այլ կենցաղային մեքենաներ վերանորոգող փականագործների պատրաստման բաժին. Ալավերդու № 3 և Երևանի № 2 տեխնիկական ուսումնարաններին կից գործում են կար ու ձևի խմբեր, ուր ընդգրկված են հարյուրավոր աղջիկներ։

Ռեսպուբլիկայի առևտրի և հասարակական սննդի ձեռնարկությունները որակյալ կադրերի մեծ կարիք ունեն։ Այսպես. գործակատարներ՝ առևտրի ցանցի համար, խոհարարներ, մատուցողներ՝ սննդի ձեռնարկությունների համար, մասնագետներ՝ հրուշակեղենի արտադրության համար։ Պետք է նշել, որ այս բնագավառների կադրերի պատրաստման ուղղությամբ ինչպես Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին առընթեր պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության Գլխավոր վարչությունը, այնպես էլ ռեսպուբլիկայի Առևտրի մինիստրությունը քիչ աշխատանք են կատարել։

Ընթացիկ յոթնամյակում զգալի չափով զարգանալու է նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը։ Ավարտվելու է գյուղատնտեսության էլեկտրիֆիկացումը։ Էլեկտրիֆիկացվելու և մեքենայացվելու են գյուղատնտեսական աշխատատար բարդ պրոցեսները։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզներն ամեն տարի ստանում են հազարավոր նոր տրակտորներ, կոմբայններ, շարքացաններ, գութաններ և այլ մեքենաներ։ Գյուղատնտեսության մեքենայացման հարցերը լուծելիս այժմ մեծ ուշադրություն է հատկացվում գյուղատնտեսական մեքենաների աշխատանքային բարձր արագության հարցերին։ Հասկանալի է, որ այդ կատարելագործված մեքենաները պահանջում են որակյալ մեխանիզատորներ, որոնք կարողանան ղեկավարել և առավել արդյունավետությամբ օգտագործել մեքենաներն ու մեխանիզմները։ Նախնական տվյալներով առաջիկա տասը տարում անհրաժեշտ է պատրաստել մոտ 9000 մեխանիզատորներ։ Հոկտեմբերյանի և Ախուրյանի գյուղմեխանիզացիայի ուսումնարանները ամեն տարի ավարտում են 500—600 տրակտորիստներ, կոմբայնավարներ և լայն պրոֆիլի այլ մասնագետներ։ Սակայն ուսումնարանները չեն կարող բավարարել գյուղատնտեսության մասնագիտական կադրերի պահանջը։

«Կյանքի հետ դպրոցի կապի ամրապնդման և Հայկական ՍՍՌ-ում ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման մասին» օրենքը նախատեսում է ութամյա դպրոցն ավարտելուց հետո արտադրություն գնացող երիտասարդության պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսուցման համար ստեղծել քաղաքային և գյուղական պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններ։ Նախատեսված է յոթնամյակի ընթացքում այդպիսի ուսումնարաններ ստեղծել բոլոր շրջկենտրոններում, որպեսզի յուրաքանչյուր շրջան հնարավորություն ունենա իր տնտեսական զարգացման հեռանկարներին համապատասխան մասնագետներ պատրաստելու։ Եթե քաղաքային պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններ ստեղծելու գործում վերջին տարիներին ռեսպուբլիկայում մեծ



աշխատանք է կատարված, ապա գյուղական ուսումնական հաստատություն բացելու ուղղությամբ կատարված աշխատանքը դեռևս շատ անբավարար է։

Խոսելով գյուղատնտեսության համար որակյալ բանվորական կադրեր պատրաստելու մասին, չի կարելի անտեսել մի հանգամանք ևս։ Մեր կոլտնտեսություններն ու սովխոզները ամեն տարի կառուցում են նոր արհեստանոցներ, գործարաններ՝ գյուղատնտեսական մթերքների վերամշակության համար։ Հատկապես արդյունաբերական մեծ շինարարություն են կատարում մեր սովխոզները։ Հետևապես պետք է հաշվի առնել, որ կոլտնտեսություններն ու սովխոզները մեխանիզատորներից բացի փականագործների, խառատների, դարբինների, ավտովարորդների, էլեկտրիկների և այլ մասնագիտությունների տեր մարդկանց կարիք ունեն։ Ուստի, պլանավորվում է գյուղական պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում պատրաստել տարբեր մասնագիտությունների որակյալ բանվորական կադրեր։

Պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների սովորողների կազմը վերջին տարիներս համալրվում է ութամյա և միջնակարգ կրթությամբ երիտասարդներով, որը պարտավորեցնում է պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնական հաստատությունների ինժեներներին, վարպետներին և դասատուներին՝ ամենայն լրջությամբ զբաղվել իրենց հանրակրթական, մասնագիտական ու մեթոդական-մանկավարժական գիտելիքների հարստացման հարցերով։ Այլապես՝ նրանք ետ կմնան կյանքից և չեն կարողանա բավարարել պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսուցման արդի պահանջները։

Անհրաժեշտ աշխատանք է կատարվում արտադրական ուսուցման վարպետներ պատրաստելու ուղղությամբ։ Առանց որակյալ վարպետի դժվար է խոսել որակյալ բանվորական կադրեր պատրաստելու մասին։ Այդ նպատակով ՀԿՊ Կենտկոմի և Մինիստրների Սովետի որոշմամբ ընթացիկ ուսումնական տարում պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության սիստեմում կազմակերպվելու է վարպետներ պատրաստող հատուկ տեխնիկում։

Պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսուցման գործը արդի պայմաններին համապատասխան կազմակերպելու համար կարևոր նշանակություն ունի ինժեներա-մանկավարժական կադրերի պատրաստումը։ Այդ ուղղությամբ առաջին քայլը կատարել է Երևանի Խ. Աբովյանի անվան Պետական մանկավարժական ինստիտուտի ռեկտորատը։ Այստեղ 1961—1962 ուսումնական տարում բացվեց ինդուստրիալ-մանկավարժական առաջին ֆակուլտետը, որտեղ սովորում են 25 մարդ։ Մեր կարծիքով՝ անհրաժեշտ է նույնպիսի ֆակուլտետ բացել նաև պոլիտեխնիկական ինստիտուտում։ Արտադրության մեջ աշխատող ինժեներա-տեխնիկական կադրերը գրեթե միշտ առնչվում են աճող սերնդի պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության հարցերի հետ ինչպես ուսումնարաններում, արտադրական ուսուցմամբ հանրակրթական դպրոցներում, այնպես էլ անմիջապես գործարանի կամ ֆաբրիկայի ցեխերում սովորողների և ուսանողների արտադրական պրակտիկայի ժամանակ։ Ուստի ժամանակն է, որպեսզի Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտում նույնպես դասավանդվի մանկավարժություն, ստեղծվի մանկավարժական ամբիոն և ապագա ինժեներները որոշ գիտելիքներ ձեռք բերեն մանկավարժությունից, մեթոդիկայից։

Պրոֆեսիոնալ կրթության սիստեմի փորձը պարզորեն ցույց է տալիս, որ բանվորական կադրերի որակը բարձր է այն ուսումնարաններում, որտեղ լավ է կազմակերպված սովորողների ձեռքով արտադրանք թողարկելը։

Այժմ ռեսպուբլիկայի պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների արհեստանոցներում սովորողների ձեռքով թողարկվում է ավելի քան 120 տեսակի զանազան արտադրանք։ Բարդ արտադրանքի թողարկմանը մասնակցում են բոլոր սովորողները, որպեսզի խորացնեն իրենց մասնագիտական հմտությունը և, ավարտելուց հետո, արտադրության մեջ լինեն իրենց գործի վարպետը։

Բանվորական կադրերի պատրաստման մյուս օղակը արտադրության մեջ բրիգադային ու անհատական ձևերով կադրեր պատրաստելն է։ Որակյալ բանվորական կադրերի պատրաստման այս ձևերն ու մեթոդները տարածված են ժողովրդական տնտեսության գրեթե բոլոր ճյուղերում. դրանք ընդգրկում են բազմաթիվ երիտասարդ և միջին տարիքի աշխատողների, որոնք չունեն համապատասխան մասնագիտական պատրաստականություն։

Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհի ձեռնարկությունները միայն վերջին երկու տարվա ընթացքում անհատական և բրիգադային կարգով պատրաստել են զանազան մասնագիտությունների ավելի քան 20 հազար բանվորներ։ Յոթնամյակի ընթացքում ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունները վերոհիշյալ եղանակով կտան մոտ 80 հազար մասնագետ։

Չպետք է անտեսել այն լուրջ թերությունները, որոնք դեռևս գոյություն ունեն առանձին գործարաններում ու ֆաբրիկաներում անհատական ու բրիգադային կարգով բանվորական կադրեր պատրաստելու բնագավառում։ Հաճախ անհատական կամ բրիգադային կարգով սովորող երիտասարդն արտադրության մեջ չի արժանանում վարպետի պատշաճ ուշադրությանը և չի բարձրանում նրա մասնագիտական որակը։

Պարտիական կազմակերպությունները պետք է ավելի լավ ղեկավարեն և օգնեն պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների մանկավարժական—վարպետական կադրերին՝ բարելավելու սովորողների կոմունիստական դաստիարակության գործը։ Պետք է խոստովանել, որ պրոֆեսիոնալ կրթության աշխատողները, ուսուցիչներն ու վարպետները անհրաժեշտ հետևողականությամբ չեն զբաղվում սովորողների դաստիարակությամբ։ Այդ է պատճառը, որ դեռևս առանձին սովորողներ թույլ են տալիս սոցիալիստական համակեցության կանոնների խախտում։

ՍՄԿՊ XXII համագումարի որոշումները մեր պարտիական, կոմերիտական կազմակերպություններին պարտավորեցնում են ավելի մոտիկից զբաղվելու պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության հետագա կատարելագործման ու զարգացման հարցերով, որպեսզի լավ կազմակերպվի երիտասարդության մասնագիտական ուսուցման և արտադրության մեջ նրանց առավել կազմակերպված ընդգրկելու շնորհակալ աշխատանքը։

---

# ՍՄԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ՄԱՐՏՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները, կոլտնտեսականները և սովխոզների բանվորները, գյուղատնտեսության մասնագետները, գործի վերածելով ՍՄԿՊ Կենտկոմի Մարտյան պլենումի որոշումները, պայքարի են ելել՝ հենց ընթացիկ տարում մեծ չափով ավելացնելու գյուղատնտեսական մթերքների արտադրությունը: Այդ գործում արդեն իսկ շոշափելի երևում է գյուղատնտեսական նոր օրգանների արդյունավետ գործունեությունը:

Մեր ամսագրի խմբագրությունը դիմել էր այդ օրգանների աշխատողներին, խնդրելով պատմել տերիտորիալ արտադրական վարչությունների աշխատանքի մասին: Այդ առթիվ ստորև տպագրում ենք մի քանի հաղորդում:

## ՄԵԾ ԵԹԱՆԳՈՎ

Բեղմնավոր գործունեություն են ծավալել Էջմիածնի կոլտնտեսայինսովխոզային արտադրական տերիտորիալ վարչության աշխատողները, վարչության առընթեր ՀԿՊ Կենտկոմի պարտիական հրահանգչական խումբը։ Օրվա մեծ մասը նրանք անց են կացնում հանրային դաշտերում, անասնաբուծական ֆերմաներում՝ սերտորեն համագործակցելով պարտիական կազմակերպությունների ու մասնագետների հետ։ Նրանք օգնում են գյուղատնտեսության աշխատողներին՝ պատվով կատարելու ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, ընթացիկ տարում արտադրելու ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ։

Պարտիայի շրջկոմների հետ միասին կոլտնտեսային, սովխոզային բոլոր պարտիական կազմակերպություններում մենք հրավիրեցինք ժողովներ, ուր գործարար մթնոլորտում քննության առնվեցին ՍՄԿՊ Կենտկոմի Մարտյան պլենումի արդյունքները։ Կոմունիստները կոնկրետ միջոցառումներ մշակեցին իրենց տնտեսություններում հողը ռացիոնալ և արդյունավետ օգտագործելու, մեքենաների արտադրողականությունը և աշխատողների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու համար։

Աշխատանքի նախնական արդյունքները գոհացուցիչ են։ Խոտադաշտային ցանքաշրջանառության վնասակար սիստեմը վերացնելու և կերի բազան ամրապնդելու նպատակով շատ կոլտնտեսություններում ու սովխոզներում էական փոփոխություններ են կատարվել ցանքատարածությունների կառուցվածքի մեջ։ Այսպես, արտադրական վարչության տնտեսություններում մոտ 360 հեկտարի վրա լրացուցիչ կերպով ցանվել է եգիպտացորեն. անցյալում այդ հողատարա-

ծությունը զբաղեցնում էր առվույտը: Ընթացիկ տարում նախատեսված պլանից
ավելի ընդարձակվել են եգիպտացորենի գարնանային և ամառային ցանքերը:
Ցածր բերքատու կուլտուրաների հաշվին կերի համար ցանվել է 250 հեկտար
շաքարի ճակնդեղ, զգալի տեղ են գրավում լոբազգի կուլտուրաները:
Արտադրական տերիտորիալ վարչությունն ընդգրկում է էջմիածնի, Հոկ-
տեմբերյանի և Շահումյանի շրջանների 82 կոլտնտեսություն և 24 սովխոզ:
Մեր գործունեության ընթացքում հիմնական ջանքերն ուղղում ենք՝ ամրապըն-
դելու տնտեսապես և կազմակերպչորեն թույլ տնտեսությունները, արագորեն
հաղթահարելու դրանց ետ մնալը:
էջմիածնի շրջանի Ն. Քյոլանլուի կոլտնտեսությունը տևականորեն ետ է
մնում, ցածր են գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և ա-
նասնաբուծական բոլոր ճյուղերի մթերատվությունը: Ինչո՞ւմն է բանը, ի՞նչ
կարելի է անել տնտեսության վիճակը բարելավելու համար: Բնակլիմայական
պայմաններն այստեղ խիստ նպաստավոր են, հողի աշխատավորները՝ եռան-
դով լի: Սակայն ավելի քան 250 հեկտար բերրի հողերից օգտագործվել է միայն
մոտ 80 հեկտարը. աշխատանքը վատ է կազմակերպված կոլտնտեսությունում,
արդյունավետ չի օգտագործվում տեխնիկան, ընկած է աշխատանքային կար-
գապահությունը: Խորհրդակցելով մասնագետների ու տեղի կոմունիստների
հետ, մենք արդեն իրականացրել ենք մի շարք միջոցառումներ. իհարկե, հնա-
րավոր չէ դրությունը միանգամից շտկել, բայց ամեն ինչ կանենք այդ տնտե-
սությունը արագ ոտքի կանգնեցնելու համար:
Օգնեցինք Շահումյանի շրջանի Շորբուլաղի և Ն. Արեշի կոլտնտեսություն-
ների պարտիական կազմակերպություններին՝ բարձրացնելու աշխատանքի
կարգապահությունը, միաժամանակ լուծելու կերի հարցը: Վարչության աշխա-
տողներն օգնեցին Ղարղաբազարի կոլտնտեսության (էջմիածնի շրջան) ղեկա-
վարներին՝ ճիշտ տեղադրելու ցանքսերը, լավ կազմակերպելու անասունների
խնամքը, կանխելու հոտում տարածված հիվանդությունները:
Գյուղատնտեսական մթերքների առատության համար անհրաժեշտ է ընդ-
հանրացնել և արտադրության մեջ արմատավորել առաջավոր փորձն ու գիտու-
թյան նվաճումները: Այն դրված է մեր գործունեության հիմքում: Ուսումնասի-
րությունը ցույց է տալիս, որ բոլոր շրջաններում մենք ունենք բազմաթիվ ա-
ռաջավոր տնտեսություններ, բրիգադներ ու օղակներ, սոցիալիստական դաշ-
տերի հիանալի վարպետներ: Դրանց աշխատանքի ուսանելի եղանակների ու-
սումնասիրումն ու գործադրումը մեծապես կօգնի մեր մարդկանց՝ ավելի լավ
աշխատելու, խելացի ու ռացիոնալ օգտագործելու եղած հնարավորություններն
ու ռեզերվները: Առաջավոր տնտեսությունների օրինակով շատ կոլտնտեսու-
թյուններ ու սովխոզներ բամբակի և եգիպտացորենի ցանքը այս տարի կատա-
րեցին քառակուսի-բնային եղանակով, կիրառում են խաղողի այգիների բնա-
յին պարարտացում՝ կոմբինացված պարարտանյութերով, պետք է հերբիցիդ-
ներով պայքար կազմակերպեն մոլախոտերի դեմ և այլն:
Մասիսի սովխոզն անցյալ տարի միևնույն հողային տարածությունից եր-
կու բերք է ստացել՝ հեկտարից 350 ցենտներ եգիպտացորենի կանաչ մասսա,
230 ցենտներ շաքարի ճակնդեղ: Հրահանգչական խումբը ո՛չ միայն ուսումնա-
սիրել է մասիսցիների փորձը, այլև ջանում է այն արմատավորել մյուս տնտե-
սություններում:
Գյուղատնտեսական արտադրության հետագա արագ վերելքը հնարավոր է



միայն աշխատավորների նյութական շահագրգռվածության բարձրացման,
նրանց ստեղծագործական նախաձեռնությունը, ակտիվությունը զարգացնելու
միջոցով: Մեր մի շարք կոլտնտեսություններում աշխատանքի հիմնական ու
լրացուցիչ վարձատրության գործում կան լուրջ թերություններ: Առանձին կոլ-
տնտեսություններում նույնիսկ չի կիրառվում լրացուցիչ վարձատրության սիս-
տեմը: Օրինակ, Ն. Ջեյվայում այն գոյություն ունի ձևականորեն, կոլտնտեսու-
թյան վարչությունը երկար ժամանակ կոլտնտեսականներին չէր տալիս նրանց
հասանելիք լրացուցիչ վարձատրությունը: Միևնույն պայմաններում գտնվող
տնտեսություններում գոյություն ունեն տարբեր արտադրական նորմաներ,
որոնք չեն խթանում աշխատանքի արտադրողականության բարձրացմանը:
Մենք արդեն իրականացնում ենք որոշ արմատական միջոցառումներ, որպես-
զի վերջ տրվի այդպիսի դրությանը:
Հրահանգչական խումբը կոնկրետ աշխատանք է կատարում տեղերում
սոցիալիստական մրցությանը գործարար բնույթ տալու, ստանձնած պարտա-
վորությունների անթերի կատարման գործում մարդկանց պատասխանատվու-
թյունը բարձրացնելու ուղղությամբ:
Մեր խոշոր անելիքներն առջևում են և պահանջում են նոր ջանքեր և ան-
սպառ եռանդ:

Դ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
էջմիածնի կոլտնտեսային-սովխոզային
արտադրական վարչության առընթեր
ՀԿԿ Կենտկոմի պարտկազմակերպիչ

## ԱՌԱՋԻՆ ՔԱՅԼԵՐԸ

Գյուղատնտեսության կառավարման վերակառուցումը համընկավ գար-
նանացանի հետ: Մեր առաջին գործը եղավ արագ կոմպլեկտավորել կոլտնտե-
սային-սովխոզային տերիտորիալ արտադրական վարչությունը և պարտիական
հրահանգչական խումբը: Հատկապես մեծ ուշադրություն հատկացրինք տեսուչ-
կազմակերպիչների ընտրությանը, այդ գործում ներգրավելով աշխատանքի հա-
րուստ փորձ ունեցող և կազմակերպական ունակություններով օժտված լավա-
գույն մասնագետների: Այսպես՝ տեսուչ-կազմակերպիչներ են աշխատում
վաստակավոր ագրոնոմ Ռ. Բաղդասարյանը, ագրոնոմ Ա. Հովհաննիսյանը և ու-
րիշներ, որոնք արտադրության մեջ աչքի են ընկել իրենց լավ աշխատանքով:
Պարտիական հրահանգչական խումբը, որը բաղկացած է ՀԿԿ Կենտկոմի
պարտկազմակերպչից և չորս հրահանգչից, սպասարկում է չորս շրջանի, ընդ-
գրկում է 63 կոլտնտեսություն և 13 սովխոզ: Ինչպես կարելի է նկատել, աշխա-
տանքի ծավալը խոշոր է, որը մեզանից պահանջում է մեծ ջանքեր:
Ինչպե՞ս ենք գործում:
Հրահանգչական խումբը սերտորեն համագործակցում է պարտիայի շրջ-
կոմների հետ, հենվում սկզբնական պարտիական կազմակերպությունների
վրա: Հրահանգիչները տնտեսություններում զբաղվում են ամենօրյա գործնա-
կան-կազմակերպական աշխատանքով. նրանք ազատված են զանազան տեղե-
կանքներ, ռեկուցագրեր գրելուց ու տեղեկություններ հավաքելուց: Եթե հրա-
հանգիչն այս կամ այն տնտեսությունում նկատել է թերություններ, ապա այդ

մասին նա ոչ թե պետք է ահազանգի, այլ հենց տեղում՝ սկզբնական պարտկազմակերպությունների հետ համատեղ գործնական միջոցներ ձեռք առնի դրանք արագորեն վերացնելու համար։ Մենք ջանում ենք ավելի քիչ խորհրդակցություններ, նիստեր, ժողովներ գումարել և ավելի շատ կենդանի կազմակերպական աշխատանք կատարել տեղերում, մարդկանց հետ։

Գյուղատնտեսական արտադրության բարձրացման գործում շատ կարևոր է այն, թե ինչպես են տեղաբաշխված կոմունիստների ուժերը կոլտնտեսություններում ու սովխոզներում։ Հրահանգիչ Ա. Գասպարյանը, երեք օր գտնվելով Կիրովականի շրջանի Համզաչիմանի կաթնաանասնապահական սովխոզում, այլ հարցերի հետ մեկտեղ զբաղվեց նաև արտադրության մեջ կոմունիստների ուժերի տեղաբաշխման հարցով։ Պարզվեց, որ այնտեղ շատ կոմունիստներ անմիջականորեն չէին աշխատում նյութական արտադրության ոլորտում, զբաղված էին երկրորդական, երրորդական գործերով։ Սովխոզի պարտկազմակերպության հետ միասին կարգավորվեց այդ աննորմալ վիճակը, ութ կոմունիստներ մշտական աշխատանքի ուղարկվեցին անասնապահական ֆերմաները, իսկ մյուսները՝ դաշտավարության մեջ։

Մեծ ուշադրություն ենք հատկացնում տնտեսապես թույլ, ետ մնացող կոլտնտեսություններին ու սովխոզներին։ Վատ էր գործերի վիճակը Ստեփանավանի շրջանի Հոբարձիի սկզբնական պարտիական կազմակերպությունում։ Երկու օր մնալով Հոբարձիում, ծանոթացանք տնտեսությանը, զրուցեցինք կոմունիստների, բազմաթիվ կոլտնտեսականների հետ. ապա աշխատանքը բարելավելու նպատակով պարտբյուրոյի և կոլտնտեսության ղեկավարների հետ դիմեցինք գործնական մի շարք քայլերի, շտկեցինք թույլ տրված սխալները։

Անգնահատելի է առաջավոր փորձի ուժը։ Որպեսզի հաղթահարվի առանձին տնտեսությունների ետ մնալը, մենք ջանում ենք ուսումնասիրել, տարածել ու արմատավորել առաջավորների փորձը։ Օրինակ, անցյալ տարվա բնակլիմայական անբարենպաստ պայմաններում Ստեփանավանի շրջանի Վարդաբլուր գյուղի կոլտնտեսության օղակավարուհի Գ. Գալստյանը յուրաքանչյուր հեկտարից հավաքեց 230 ցենտներ եգիպտացորենի կանաչ մասսա, իսկ Սպիտակի շրջանի Սարահարթի կոլտնտեսության օղակավարուհի Ն. Քարամյանը՝ 480 ցենտներ շաքարի ճակնդեղ։ Ուսումնասիրությունից հետո, արտադրական վարչության տեսուչ-կազմակերպիչների և պարտխմբի հրահանգիչների միջոցով այդ փորձը աստիճանաբար արմատավորում ենք մյուս տնտեսություններում։

ՍՄԿԿ Կենտկոմի Մարտյան պլենումը պարտիական կազմակերպությունների, գյուղատնտեսական նոր օրգանների կարևոր խնդիրներից մեկը համարեց գյուղատնտեսության աշխատավորների նյութական շահագրգռվածության բարձրացումը, աշխատանքի կազմակերպման ու նորմավորման բարելավումը։ Մեր ուսումնասիրությունները ցույց տվին, որ այդ ուղղությամբ կան լուրջ թերություններ։ Օրինակ, Կալինինոյի շրջանի Սարատովկա գյուղի կոլտնտեսությունում անասնապահներին տրվող լրացուցիչ վարձատրության սիստեմը բոլորովին չէր խթանում կաթի արտադրության ավելացմանը. պլանային առաջադրանքի յուրաքանչյուր ցենտներ կաթի արտադրության համար անասնապահներին տրվում էր լրացուցիչ վարձատրություն։ Այդ մասին տեղում զրույցներ ունեցանք հենց իրենց՝ անասնապահների, կոլտնտեսության ղեկավարների հետ։ Դա մեզ հնարավորություն տվեց շտկելու սխալը և, հաշվի առնելով



նրանց կարծիքները, մշակել լրացուցիչ վարձատրության նոր, պրոգրեսիվ սիստեմ, ըստ որի ներկայումս, որպես խրախուսանք, լրացուցիչ վարձատրություն է տրվելու պլանային առաջադրանքը գերակատարած յուրաքանչյուր ցենտներ կաթի համար։ Գործնական միջոցներ են իրականացվում՝ բոլոր սովխոզներում կիրառելու աշխատանքի ակորդային-պրեմիալ վարձատրության սիստեմը։

Մեր արտադրական վարչության շրջաններում հիմնականում ավարտվել է գարնանացանը և փոխվել է ցանքատարածությունների կառուցվածքը. կրճատված ցելերի և խոտաբույսերի ցանքի փոխարեն 800 հեկտարով ավելացրել ենք եգիպտացորենի ցանքատարածությունը. անասունների կերի համար ցանել ենք 1200 հեկտար շաքարի ճակնդեղ, 800 հեկտար լոբազգի կուլտուրաներ և այլն։

Նկատելիորեն բարձրացել է անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Կատարվել է կաթի, մսի, բրդի և ձվի արտադրության ու վաճառքի չորս ամիսների պետական առաջադրանքը։ Այդ ամենը վկայում են, որ գյուղատնտեսության կառավարման վերակառուցումը տալիս է բարերար արդյունք։

Այն, ինչ արված է, մեծ գործի սկիզբն է միայն։ Մեր առջև ծառացած են խոշոր ու պատասխանատու խնդիրներ, որոնց կենսագործումը պահանջում է ուժերի ու միջոցների մաքսիմալ մոբիլիզացիա, ավելի շատ նախաձեռնություն ու ակտիվություն աշխատանքում։

Խ. ՍԱՖԱՐՅԱՆ

Կիրովականի կոլտնտեսային-սովխոզային
արտադրական վարչությանն առընթեր ՀԿՊ
Կենտկոմի պարտկազմակերպիչ

## ԽՈՐ ՄԱՍՆԱԳԻՏԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

Մեր այն հարցին, թե Իջևանի կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչության շրջանների գյուղատնտեսությունն առաջիկա տարիներին հիմնականում ինչ ուղղությամբ է զարգանալու, տերիտորիալ վարչությանը առընթեր ՀԿՊ Կենտկոմի պարտկազմակերպիչ ընկ. Խ. ԴՐԱՄԲՅԱՆԸ պատասխանեց.

— Առայժմ ինձ դժվար է պատասխանել Ձեր հարցին, քանի որ միայն նոր ենք ծանոթանում մեր տերիտորիայում գտնվող շրջանների էկոնոմիկային, ճշգրտում գյուղատնտեսության առանձին ճյուղերի հեռանկարները, մասնագիտացման հարցերը։ Իսկ ինչ վերաբերում է կոնկրետ Իջևանի շրջանին, որտեղ մինչև վերջերս աշխատում էի, կարող եմ ասել հետևյալը։

Նախատեսվում է առաջիկա քսան տարում Իջևանի շրջանում անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնել՝ կաթինը երեք, մսինը՝ մոտ 3, բրդինը՝ 2,4, ձվինը՝ 6,8 և մեղրինը՝ 7,4 անգամ։ Ստեղծվելու է կերի կայուն բազա. անմշակ հողերի և մաքուր ցելերի օգտագործման, բազմամյա խոտաբույսերի ցանքերի կրճատման հաշվին զգալիորեն ընդլայնվելու են եգիպտացորենի ցանքատարածությունները։ Ջրաշինարարական աշխատանքների ծավալման շնորհիվ մինչև 1980 թվականը երկու հազար հեկտարով կավելանա ոռոգելի հողերի տարածությունը։

Առաջիկայում ևս գյուղատնտեսական արտադրության մեջ ծխախոտագոր-

ծությունը պահպանելու է իր տեսակարար կշիռը: Միաժամանակ զարկ է տըրվելու պտղաբուծությանը, տնկվելու են ավելի քան հազար հեկտար նոր այգիներ: Այսպիսով, բուսաբուծությունը հիմնականում զարգանալու է այգեգործության և ծխախոտագործության ուղղությամբ: Շրջանը մասնագիտանալու է կաթնաանասնաբուծության մեջ, իսկ առանձին կոլտնտեսություններում ու սովխոզներում մեծ ուշադրություն է հատկացվելու նաև անասնաբուծության մյուս ճյուղերին (խոզաբուծություն, թռչնաբուծություն, ոչխարաբուծություն):

Էական նշանակություն ունի շրջանի գյուղատնտեսության մասնագիտացման հարցերի ճիշտ լուծումը, որը հնարավորություն կտա՝ տարածության յուրաքանչյուր միավորից ստանալու առավել բարձր տնտեսական արդյունք, ապահովելու կոլտնտեսություններում և սովխոզներում բարձր եկամտաբեր ճյուղերի զարգացումը, բարձրացնելու կոլտնտեսականների և բանվորների նյութական ու կուլտուրական մակարդակը:

ՍՄԿԿ Կենտկոմի Մարտյան պլենումից հետո շրջանի կոլտնտեսությունների և սովխոզների ֆինանսա-տնտեսական գործունեության արդյունքների վերլուծումը պարզորոշ ցույց տվեց գյուղատնտեսության մասնագիտացման ասպարեզում եղած սովերոտ կողմերը, վրիպումները:

Իջևանի շրջանի բնակլիմայական առանձնահատուկ պայմաններում գյուղատնտեսության արտադրության նեղ, միակողմանի մասնագիտացման իրականացումն անհնար կդարձներ գյուղատնտեսության ռեզերվների ռացիոնալ օգտագործումը և չէր ապահովի բանվորական ուժի լրիվ զբաղվածությունը տարվա բոլոր ամիսներին: Անհրաժեշտ է արմատավորել բազմաճյուղ մասնագիտացում: Սակայն անցած տարիներին որոշ կոլտնտեսությունների ղեկավարներ, սխալ ըմբռնելով բազմաճյուղ մասնագիտացման էությունը, ամենուրեք արմատավորում էին տնտեսության բոլոր մանր ճյուղերն ու ենթաճյուղերը, առանց հաշվի առնելու դրանց տնտեսական շահավետությունը: Այսպես, օրինակ, Փոլադի կոլտնտեսությունը պահում էր ընդամենը 22 հավ. մի քանի հավից էր բաղկացած նաև Գետաշենի թռչնաբուծական ֆերման, իսկ ֆերման, ինչպես գիտենք, ունի և՛ վարիչ, և՛ սպասարկող անձնակազմ:

Այդ արդյունք էր այն բանի, որ շրջանի համար սահմանված անասնաբուծական և բուսաբուծական մթերքների արտադրության առաջադրանքները մեխանիկաբար բաշխվում էին շրջանի բոլոր կոլտնտեսությունների վրա, առանց հաշվի առնելու նրանց բնական ու տնտեսական պայմանները:

Խոշոր ֆերմաների առավելությունն ակնառու կերպով կարելի է ցույց տալ Թալայի և Գոշի կոլտնտեսությունների թռչնաբուծական ֆերմաների անցյալ տարվա աշխատանքի արդյունքներով: Թալայի կոլտնտեսության ֆերման, որն ունի 3000 հավ, 1000 ձվի արտադրության վրա ծախսել է 14,7 աշխօր և մեկ ձվի ինքնարժեքը կազմել է 8,4 կոպեկ, իսկ Գոշի կոլտնտեսության ֆերման, որն ունի 380 հավ, 1000 ձվի արտադրության վրա ծախսել է 108 աշխօր և մեկ ձվի ինքնարժեքը կազմել է 39,6 կոպեկ:

Շրջանի 11 կոլտնտեսություններ արդեն 1962 թվականից հրաժարվել են մանր թռչնաբուծական ֆերմաներ պահելուց: Սևքարի, Աչաջրի, Ույունթալայի և մի շարք այլ կոլտնտեսություններ դրանց փոխարեն կազմակերպելու են 10—12 հազար հավ ունեցող թռչնաբուծական խոշոր ֆերմաներ: Այդպես է դրությունը նաև խոզաբուծության բնագավառում: Օրինակ, Փոլադի կոլտնտե-



սությունը պահում էր ընդամենը 35 գլուխ խոզ. այստեղ յուրաքանչյուր ցենտներ խոզի մսի արտադրության համար ծախսվել էր 127 մարդ-օր, և մեկ կիլոգրամ մսի ինքնարժեքը կազմել 5,2 ռուբլի: Իջևանի սովխոզում, մոտավորապես նույնչափ աշխատողներով, խնամում են 617 գլուխ խոզ. Փոլադի կոլտնտեսության համեմատությամբ, սովխոզում 1 ցենտ. մսի արտադրության համար ծախսվել է 8—9 անգամ ավելի քիչ աշխատանք և չորս անգամ ցածր է եղել արտադրանքի ինքնարժեքը: Փոլադի, Աչաջրի և Սարիգյուղի կոլտնտեսությունները վերացրել են խոզաբուծական գաճաճ ֆերմաները: Դրանց կողքին Կույբիշևի, Իջևանի, Սևքարի սովխոզները, ինչպես և Գյոյարչինի, Գետաշենի, Գոշի կոլտնտեսությունները մասնագիտանալու են խոզաբուծության ուղղությամբ: Նույն սկզբունքն է կիրառվել նաև ոչխարաբուծության ասպարեզում:

Կոլտնտեսություններում և սովխոզներում իրականացնելով այսպիսի չերտավորված մասնագիտացում, յուրաքանչյուր տնտեսություն հնարավորություն է ստանում իր բնակլիմայական պայմաններին համապատասխան մեծ մասշտաբներով զարգացնելու առավել արդյունավետ ճյուղեր, ստանալու ավելի շատ արտադրանք, քան անցած տարիներին տվել են մի քանի կոլտնտեսություններ միասին վերցրած:

Ինքնարժեքն իջեցնելու նպատակով ծրագրված է կառուցել միջկոլտնտեսային բտման կայան, որը կնպաստի մսի արտադրության ավելացմանը:

Մեր կարծիքով շրջանը հիմնականում մասնագիտանալու է կաթնամսատու անասնաբուծության ուղղությամբ: Դրա համար կան բոլոր պայմաններն ու հնարավորությունները: Բայց ներկա դրությամբ կաթնապրանքային ֆերմաներում դեռևս բարձր է անասնաբուծական մթերքների ինքնարժեքը, շատ են աշխատանքային ծախսումները, իսկ եկամուտները՝ քիչ:

Այդ են ցույց տալիս հետևյալ աղյուսակում բերված թվերը.

1960 թ. շրջանի կոլտնտեսությունների կողմից անասնաբուծության բնագավառում ծախսված աշխօրերը և դրանց դիմաց ստացված եկամուտները (տոկոսներով)

| Ֆերմայի անվանումը | աշխօրերի ծախսում | դրամական եկամուտ |
|---|---|---|
| Կաթնապրանքային | 52 | 32,2 |
| Ոչխարաբուծական | 25,2 | 42,7 |
| Խոզաբուծական | 14,4 | 11,5 |
| Թռչնաբուծական | 5,2 | 6,8 |
| Մեղվաբուծական | 2,6 | 1,2 |
| Շերամապահական | 0,6 | 0,6 |

Ինչպես երևում է աղյուսակից, անասնաբուծության մեջ առավել աշխատատար է կաթնաանասնապահությունը: Կաթնապրանքային ֆերմաներում շատ են աշխատանքային ծախսումները, սակայն ստացված դրամական եկամուտները համեմատաբար քիչ են: Դա արդյունք է այն բանի, որ առանձին կոլտնտեսություններում չեն արմատավորվում անասնաբուծության վարման արդյունավետ մեթոդները, լավ չեն օգտագործվում փոքր մեխանիզմները:

Ցածր եկամուտ ստանալու պատճառներից մեկը հոտում կովերի նվազ գլխաքանակն է: 1961 թվականին կովերի գլխաքանակը խոշոր եղջերավոր անասունների մեջ կազմում էր 36,4 տոկոս, իսկ Կույբիշևում, Ույունթալայում և մի շարք այլ կոլտնտեսություններում այն ավելի ցածր էր: Նախատեսվում է շրջանում կովերի գլխաքանակը հոտում հասցնել 43, իսկ Կույբիշևում, Ույունթալայում և այլ տնտեսություններում՝ 47—50 տոկոսի: Դրա կենսագործման համար վճռական նշանակություն ունի կերի արտադրությունը, որը դեռևս

անբավարար է։ Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ կերի կուտակման
համար բարենպաստ տարում՝ 1960 թվականին, կուտակվել է 110 հազար 78
ցենտներ կերամիավոր, մինչդեռ պլանով նախատեսված չափով անասնաբու-
ծական մթերքներ արտադրելու համար պահանջվում էր 178 հազար 690 ցենտ-
ներ կերամիավոր։

Կոլտնտեսությունները և սովխոզները հարկադրված են կերի պակասը լը-
րացնել գնումների միջոցով, որի համար ծախսվում են չնախատեսված շատ
դրամական միջոցներ։ Այսպես, 1960 թվականին շրջանում այդ նպատակով
ծախսվել է 149 հազար 540 ռուբլի, 1961 թվականին՝ 175 հազար 782 ռուբլի։
Դա հետևանք է խոտադաշտային ցանքաշրջանառության սիստեմի կիրառման։
Անցած տարիներին չեն օգտագործվել մեծ քանակությամբ պիտանի հողեր.
օրինակ, 1960 թվականին շրջանի ընդհանուր հողատարածությունների մեջ ցե-
-լերը և չօգտագործված հողերը կազմեցին 29 տոկոս։ Ավելին, ամբողջ ցանքե-
րի մեջ կերային կուլտուրաները կազմել են 24 տոկոս, որոնց զգալի մասը
բազմամյա խոտաբույսեր են։ Բազմամյա խոտաբույսերի յուրաքանչյուր հեկ-
տարից ստացվել է 12,8 ցենտներ կերամիավոր, մինչդեռ եգիպտացորենի
ամեն մի հեկտարից ստացվել է 52, իսկ կարտոֆիլից՝ 25 ցենտներ կերամիա-
վոր։ Տնտեսապես շահավետ է խոտաբույսերը փոխարինել եգիպտացորենի, շա-
քարի ճակնդեղի և այլ արժեքավոր կուլտուրաների ցանքերով։ Մասնավորա-
պես եգիպտացորենի տնտեսական արդյունավետությունն ակնառու երևաց
1961 թվականի երաշտի պայմաններում։ Ռևազլուի կոլտնտեսությունը, հետե-
վողականորեն կիրառելով եգիպտացորենի մշակության ագրոտեխնիկան, հեկ-
տարից միջին հաշվով ստացավ 50 ցենտներ հատիկի բերք, կամ յուրաքանչ-
յուր հեկտարից 110 ցենտներ կերամիավոր. մինչդեռ նույն կոլտնտեսությու-
նում 31 հեկտար տարածություն զբաղեցնող բազմամյա խոտաբույսերից ոչ
մի ցենտներ խոտ չհավաքվեց։

Կերային ռեսուրսների ավելացման խոշորագույն ռեզերվ են մարգա-
գետիններն ու արոտավայրերը։ Շրջանի այդ հսկայական տարածություննե-
րը վատ են օգտագործվում։ Ծրագրվում է բնական խոտհարքներն ու արոտա-
վայրերը բարելավելու համար կիրառել մի շարք միջոցառումներ. բացի այդ
շրջանում չօգտագործվող հողերից և ցելերից մոտ 2000 հեկտարի վրա կցանվեն
կերային կուլտուրաներ։

Բավարար աշխատանք չի տարվում առաջավոր փորձի արմատավորման,
անասունների ցեղային կազմի բարելավման, ստերջության վերացման և այլ
բնագավառներում, որի պատճառով անասունների մթերատվությունը ցածր է։

Շրջանի էկոնոմիկայի մեջ այժմ առանձնապես կարևոր տեղ է գրավում
ծխախոտագործությունը, որից ստացված դրամական եկամուտները կազմում
են բոլոր եկամուտների 65—70 տոկոսը։ Սակայն անհրաժեշտ է նշել, որ ան-
բավարար է այդ կուլտուրաների մշակության մեքենայացումը։

Բուսաբուծության մեջ աշխատանքային ծախսումների 61 տոկոսը բռնում
է ծխախոտի մշակությունը, որի տարածություններն ապահովված չեն պլան-
տացիոն-տեխնիկական կառուցվածքներով։ Դա հենց ծխախոտի հումքի վա-
տորակության պատճառներից մեկն է։ Բացի դրանից, ծխախոտի չորացման
ու մշակման ժամանակ տեղի են ունենում մեծ կորուստներ։ Բերքատվության
բարձրացմանը խանգարում է նաև մշակության մեքենայացման ցածր մա-



կարդակը, որպիսի հանգամանքը պետք է լրջորեն մտահոգի ռեսպուբլիկայի
գիտնականներին։

Իջևանի մեղմ կլիման հնարավորություն է տալիս մեծ ծախսումներ չկա-
տարել այգեբացման և այգեթաղման աշխատանքների վրա։ Առանձին կոլ-
տնտեսությունների այգեգործների փորձը հաստատում է, որ շրջանում խաղո-
ղագործությունը հանդիսանում է բարձր եկամտաբեր ճյուղ։ Իջևան քաղաքի
շրջակայքում գտնվող Թալայի, Վ. Աղդանի, Խաշթառակի տնտեսությունները
միաժամանակ պետք է մասնագիտանան բանջարաբուծության մեջ։

Խաղողագործությունը, պտղաբուծությունը և բանջարա-բոստանային կուլ-
տուրաների մշակությունը պետք է զարգացվի այնպես, որ լիովին ապահով-
վեն ազգաբնակչության պահանջմունքները, ինչպես և առաջիկա տարիներին
շրջանում կառուցվող պահածոների և գինու գործարանների հումքի պահանջը։

Գյուղատնտեսության զարգացման հետագա ընթացքը, հավանաբար նոր
փոփոխություններ կմտցնի էկոնոմիկայի մասնագիտացման ուղղությամբ մը-
շակված այժմյան պլանի մեջ։ Արտադրության մասնագիտացումը, լինելով
հասարակական արտադրության անընդհատ աճի ու կատարելագործման
կարևոր պայմաններից մեկը, բացառիկ դեր է խաղում աշխատանքի արտադրո-
ղականության բարձրացման և ինքնարժեքի իջեցման գործում։ Այս առումով
էլ գտնում ենք, որ մասնագիտացման հարցերի ճիշտ լուծումը այն ամենաան-
հրաժեշտ պայմաններից մեկն է, որը մեզ հնարավորություն կտա ավելի ա-
րագ իրագործելու պարտիայի XXII համագումարի և Կենտկոմի Մարտյան
պլենումի որոշումները։

---

## ՎՃՌԱԿԱՆ ԳՈՐԾՈՆԸ

Վլադիմիր Ավագյանը քայլում էր ճանապարհի
եզրով, աչքը հառած հեռավոր դաշտերին։ Զգաց-
վում էր գարնան շունչը։ Լեռների հարավային
լանջերը ազատվում էին ձյան շերտից, արդեն
սևին էին տալիս դաշտերը։

Գարնանային օր էր։ Այն, ինչպես միշտ, կոլ-
տնտեսության նախագահին բերեց անհամար
հոգսեր։ Վ. Ավագյանը, առանց գրասենյակ մըտ-
նելու, վաղ առավոտյան եկել էր դաշտ։ Նա լիա-
թոք շնչում էր խոնավ, սև հողի բույրը։ Կանգ-
նում էր, ծխում, ինչ-որ հաշիվներ անում մտքում։

— Գյուղատնտեսը իրավացի էր,— մտածեց
նա,— մի շաբաթ հետո կարելի է սկսել հերկը։
Հենց վաղվանից պետք է վերջին անգամ ստուգել
դաշտային աշխատանքների նախապատրաստու-
թյունը։

...Հավաքվել էին կոլտնտեսության վարչության
գրասենյակում։ Պարտբյուրոյի քարտուղար Ժորա
Սարգսյանը մի հայացք գցեց հավաքվածների
վրա և, համոզվելով, որ բոլորն էլ ներկա են,
ասաց.

— Սկսենք խորհրդակցությունը։ Անհրաժեշտ է
ամենայն մանրամասնությամբ ստուգել ամեն մի
բրիգադա, ամեն մի աշխատամաս, ստուգել մե-
քենաները, սերմերը, պարարտանյութերը, գործիք-
ները։ Պարզել, թե կա՞ն արդյոք անավարտ գոր-
ծեր, վրիպումներ։

— Իսկ եթե թերություններ հայտաբերենք, ո՞ւմ
պեկուցենք, ձե՞զ, թե կոլտնտեսության նախա-
գահին։

Հարցնողը կլոր դեմքով երիտասարդ էր, որի
ձեռքին պինվորական գլխարկ կար։ Քարտուղարը
չհասցրեց պատասխանել. տղայի կողքին կանգ-
նած տարեց մի տղամարդ դիտմամբ ծոր տալով
բառերը՝ մի փոքր խռպոտ բասով ասաց.

— Է՜յ դու, պինվո՛ր... Ի՞նչ է նշանակում հայ-
տաբերել թերությունները և պեկուցել։ Ո՛չ թե պե-
կուցել, այլ հարկավոր է վերացնել նկատվածը։
Կհաղթահարես դրանք, այն ժամանակ էլ պե-
կուցիր։

— Ստուգելը քիչ է,— նկատեց կոլտնտեսու-
թյան նախագահը,— հարկավոր է աշխատել բրի-
գադայում, օգնել բրիգադավարին և օղակավար-
ներին, նրանց հետ միասին վերացնել թերություն-
ները։ Հենց դրա համար է հասարակական ստու-
գումը։ Իսկ հաշիվ, իհարկե, պետք է տալ պարտ-
կազմակերպությանը։ Դա փաստ է։

— Գլխավորը մարդկանց հետ տարվող աշխա-

տանքն է,— շարունակեց Ժ. Սարգսյանը,— տեսեք թե ինչպես են կոմպլեկտավորված օղակները, բրիգադայում ինչպես են մտադիր տեղաբաշխել ուժերը, ամեն մեկը գիտե՞ արդյոք, թե որտեղ և ինչ է անելու դաշտ դուրս գալու հենց առաջին օրից, ինչ պարտավորություններ է վերցրել բրիգադան:

Ստուգողները, իսկ դրանք մոտ քսան հոգի էին՝ կոմունիստներ, գյուղսովետի դեպուտատներ, շարքային կոլտնտեսականներ, գործի անցան: Նրանք խորամուխ էին լինում ամեն ինչի մեջ, նայում, ինչպես ասում են՝ ամեն ծակ ու ծուկ: Իսկ գյուղի այդ փորձառու մարդկանց սրատես աչքից ոչինչ չես թաքցնի:

— Ինչո՞ւ այս տրակտորի խցիկի ջարդված ապակին չեք փոխել:

— Ոչի՛նչ, ես պինդ մարդ եմ, չեմ մրսի,—պատասխանեց տրակտորիստը:

— Իսկ դու միայն քո մասին մի՛ մտածիր, մտածիր նաև բրիգադայի, ամբողջ կոլտնտեսության հեղինակության մասին: Ջարդված ապակին թափթփվածության նշան է:

— Ճիշտ է, քեռի Սենիկ, հուսլ տուր դրան:

— Մի ժամ հետո ապակին դրված լինի: Կըստուգեմ:

— Կես ժամ հետո եկեք, ամեն ինչ կարգին կլինի:

Հասարակական ստուգումը տևեց երեք օր: Դա չափազանց օգտակար էր իր գործնական արդյունքներով և ուսանելի՝ կազմակերպչական աշխատանքի այն փորձով, որ ձեռք բերեց պարտիական և կոլտնտեսային ակտիվը: Մեխանիկ Վռամ Հարությունյանի ղեկավարությամբ տրակտորիստները վերացրին հայտաբերված թերությունները, ձեռք բերվեցին բրիգադաներում պակասող գործիքները, գարու սերմի մի մասը զտեցին երկրորդ անգամ, լրացուցիչ մարդիկ առանձնացվեցին պարարտանյութը դաշտ տեղափոխելու համար, ճըշգըրտվեցին դաշտային աշխատանքների գրաֆիկները:

Մի՞թե հնարավոր է թվել այն ամենը, ինչ արվել է ստուգման օրերին: Կոլտնտեսությունը դաշտային աշխատանքները դիմավորեց կազմ ու պատրաստ, համընթաց քայլեց այս մեծ գարնան հետ:

ՍՄԿԿ Կենտկոմի Մարտյան պլենումի նախօրեին Կաթնաջրի կոլտնտեսության ղեկավարները, գյուղի կոմունիստները հասկացան, որ այս տարվա գարունը՝ առաջին գարունը պարտիայի XXII համագումարից հետո, մեծ սխրանքների ժամանակ է: Մարտյան պլենումի որոշումները նոր շունչ հաղորդեցին գյուղին, թևավորեցին մարդկանց, կյանքի կոչեցին նորանոր ուժեր:

Կոլտնտեսության նախագահին ու պարտկազմակերպության քարտուղարը շատ շուտ էին արթնացել դաշտային աշխատանքների այդ առաջին առավոտը:

...Գիշերն առատ ցող էր նստել, բայց քամի չկար. սպասվում էր պարզ ու լավ օր: Արևելքը դեռ չէր շառագունել, փողոցի երկու կողմերում դեռ սևին էին տալիս տները, իսկ գյուղի ծայրից արդեն լսվում էր շարժիչների աղմուկը:

Երբ Ավագյանը և Սարգսյանը մոտեցան դաշտային կայանին, արդեն այնտեղ էին մեխանիկը, բրիգադավարները: Տրակտորիստները մեխանիկի հետ ավարտում էին վերջին պատրաստություններ: Բրիգադավար Նշան Վասիլյանը, որն սպայական հին սովորությամբ հաճախ էր օգտագործում զինվորական տերմիններ, չգիտես կատակով թե լուրջ զեկուցեց Ավագյանին:

— Ընկե՛ր նախագահ: Տրակտորա-դաշտավարական առաջին կոմպլեքսային բրիգադայի անձնակազմն ու տեխնիկան կենտրոնացված են ելման դիրքերում:

— Իսկ ինչպե՞ս են կրտսեր Նշանի գործերը,— ժպտալով հարցրեց Ավագյանը երկրորդ բրիգադայի ղեկավար Նշան Աղոյանին:

— Առաջին բրիգադայում մեկ Նշան կա, իսկ մեզ մոտ՝ երկու, ես և կոլտնտեսության հնագույն մեխանիզատոր Մանուկյանը: Էլ ինչպե՞ս կարող է առաջին բրիգադան հասնել մեզ:

Գյուղում հաճախ կարելի է խոսակցություններ լսել երեք Նշանների մասին: Նրանցից որի մասին էլ հարցնեք առաջին իսկ պատահած համագյուղացուն, լինի նա ալևոր ծերունի թե պատանի, ոչ մեկից վատ խոսք չեք լսի: Նրանց մասին ասում են՝ իսկական պարտիականներ են:

...Առաջին ակոսը: Որքա՜ն զգացմունքներ ու մտքեր են ծնվում, երբ տեսնում ես, թե ինչպես է գցվում առաջին ակոսը, երբ զգում ես արթնացած հողի բույրը: Այդ պահը բազում անգամ ավելի խորն էր ապրում տրակտորիստ Մանուկյանը: Այո՛, նա հպարտանում էր, որ իրեն վիճակվեց գցել այս վճռական գարնան առաջին ակոսը:

Իսկ տրակտորը համաչափ հռնդյունով ընթանում էր դաշտի միջով: Ամբողջ հերթափոխին մեքենան աշխատում է լրիվ բեռնվածությամբ, ո՛չ մի հարկադրված դադար, ո՛չ մի խափան:

Պարտբյուրոն խորհուրդ տվեց ագիտատորներին զրույցներ անցկացնել լավագույն տրակտորիստի մասին: Եվ նրանք պատմում էին, որ արդեն քառորդ դար է, ինչ Նշան Մանուկյանն աշխատում է որպես կոլտնտեսության մեխանիզատոր, որ օրական նա կատարում է մեկուկես նորմա, խնայում վառելիք, գրավում է առաջին տեղը մրցության մեջ: Նրանք խոսում էին կոմունիստի ստեղծագործական խանդավառության, նրա առաջարկությունների ու նախաձեռնության մասին, որոնք տոգորված են մի մտահոգությամբ՝ ինչպես ավելի լավ օգտագործեն հողը, այն դարձնեն ավելի բարեբեր ու առատ:

Մանուկյանն իր հերթափոխի՝ Ն. Ամիրբեկյանի հետ միասին հաշվել էր, որ յուրաքանչյուր ագրեգատի բեռնվածությունն ավելացնելու, իսկ անհրաժեշտ դեպքերում երկհերթ աշխատանքի անցնելու միջոցով հնարավոր կլինի կրճատել ցանքի ժամկետները: Առաջարկությունն ընդունվեց, և հացահատիկի ու շաքարի ճակնդեղի ցանքում շահեցին երեքական օր: Մանուկյանի նախաձեռնությամբ շաքարի ճակնդեղի և եգիպտացորենի ցանքատարածությունների հողամասերը պարարտացվում են օրգանական և հանքային պարարտանյութերի խառնուրդներով, ցանքերը մշակվում են երկու ուղղությամբ: Այս միջոցառումներից հետո սպասվում է հեկտարից 30 տոկոսով ավելի բերք: Նա ուսումնասիրել է բույսերի փնջատնկման մեթոդը և այս տարի ճակնդեղագործության աշխատատար պրոցեսներից մեկը՝ նոսրացումը, մեքենայացվելու է: Դրա շնորհիվ զգալի չափով կիջնեն շաքարի ճակնդեղի արտադրության ծախսերը:

Առատության համար ծավալված նոր արշավի առաջամարտիկներից է կոմունիստ Վասիլյանը: Անցյալ տարի պարտիական կազմակերպության հանձնարարականով նա գնաց ետ մնացող բրիգադա:

Սկզբնական շրջանում Վասիլյանը դժվարությունների էր հանդիպում, բայց ամեն քայլափոխում նա զգում էր կոմունիստների օգնությունը, զգում էր, որ ինքը մենակ չէ: Բրիգադավարի համառ ջանքերով բարելավվեց աշխատանքի կազմակերպումը, ամրապնդվեց կարգապահությունը: Բրիգադայում խրախուսվում էին լավ աշխատողները, պախարակվում լոդրերն ու պորտաբույծները: Այսպես՝ բրիգադայի անդամներից մեկը ծույլ էր, նա ապրում էր կնոջ աշխօրերի հաշվին: Երբ հարցնում էին նրան, թե ինչո՞ւ աշխատանքի դուրս չի եկել, պատասխանում էր.

— Առողջությունս վատ է, հոգնել եմ...

— Խե՛ղճ մարդ, առավոտից մինչև իրիկուն քնած ես ու հանգստանալու ժամանակ էլ չունես,— ասաց նրան Վասիլյանը:

Վասիլյանը մերթ հանդիմանում, մերթ հորդորում էր նրան, երբեմն էլ ծաղրում: Մի երեկո, ցանքն սկսելու նախօրյակին, մի ամբողջ ժամ խոսեց նրա հետ: Մարդը մի երկու օր էլ նազ ու տուզ արեց, իսկ երրորդ օրը դուրս եկավ աշխատանքի:

— Վատ էլ չի աշխատում, ջանպահ չէ,— ասաց ինձ Վասիլյանը,— դրա համար էլ խնդրում եմ չհարցնեք նրա անունը: Ինչո՞ւ անտեղի անցյալը քամուն տալ:

— Բրիգադավարը գիտե, թե ինչպես կարելի է համոզել, խելքի բերել մարդուն,— ասում էին կոլտնտեսականները այդ դեպքից հետո:

«Որքա՜ն անհրաժեշտ է ղեկավարին համոզելու կարողությունը, որը ներքին համոզվածության, պարտքի գիտակցության արդյունք է» մտածեցի ես:

Մի անգամ, երբ Վլադիմիր Ավագյանի հետ խոսում էինք Վասիլյանի մասին, ասաց՝ նա մտածող մարդ է: Այդ բանը ինձ թելադրեց գնալ գյուղական գրադարան և նայել ընթերցողների աբոնենտային քարտերը: Վասիլյանի և Մանուկյանի քարտերում գրանցված էր ավելի քան քսանական գիրք: Կարդացած գրքերի քանակով նրանք երրորդն են կոլտնտեսության հաշվապահ Խորեն Եգորյանից հետո: Վերջինս չորս ամսում 28 գիրք է վերցրել գրադարանից:

Վերջերս Վասիլյանը զրույց ունեցավ բրիգադայի երիտասարդների հետ: Խոսում էին հողագործության խոտադաշտային սիստեմի վնասների, ցանքատարածությունների նոր կառուցվածքի մասին: Երիտասարդ ճակնդեղագործներին խորհուրդ տալով ուսումնասիրել ագրոտեխնիկան, տիրապետել գիտելիքներին և առաջավոր փորձին, Նշանն ի միջի այլոց ասաց.

— Մեր դպրոցում կար կենսաբանության մի դասատու: Նա հաճախ մեզ ասում էր, թե գիտությունը մեծ, անսպառ ուժ է. այն բոլոր գանձերից թանկ է: Ամբողջ կյանքումս չեմ մոռանա ծեր ուսուցչիս այդ խոսքերը:

Վասիլյանը առաջ էլ լավ գիտեր շարահերկ կուլտուրաները, բայց Մարտյան պլենումից հետո նա ձեռնամուխ եղավ դրանց մշակման ագրոտեխնիկայի ավելի խոր ուսումնասիրմանը: Հանգամանորեն ծանոթացավ Շաքարի ճակնդեղի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի դիրեկտոր, Լենինյան մրցանակի լաուրեատ Ի. Բուզանովի որոշ աշխատություններին: Ագիտատորների սեմինարում պատմեց գիտնականի «Ահա թե ինչ է տալիս շաքարի ճակնդեղը» վերնագրով հոդվածի մասին, որը հրապարակվել է «Պրավդայում»:

Այստեղ մարդիկ սկսել են ավելի խելամիտ վերագնահատել անցած տարիների աշխատանքի արդյունքները, փնտրել նորանոր ռեզերվներ, փշրել հին տրադիցիաները հողի օգտագործման հարցում, որոնք խոտադաշտային արատավոր սիստեմի ծնունդ էին:

Բայց նորը, առաջավորն իր համար ճանապարհ է հարթում հնի, իր դարն ապրածի դեմ մղվող պայքարով, դժվարություններով: Գյուղի կոլտնտեսության վարչությունում, ակտիվի խորհրդակցություններում, երբ քննության էին առնվում ցանքատարածությունների կառուցվածքի հարցերը, ծագում էին կրքոտ, սուր վեճեր: Առանձին ընկերներ թերահավատ էին կոլտնտեսության համար նոր կուլտուրաների՝ սիսեռի և կերային լոբազգիների նկատմամբ: Կոմունիստներն սկսեցին կոլ-

տնտեսականներին համբերատար կերպով բացատրել, ապացուցել հողագործության շարահերկային սիստեմի առավելությունները, եգիպտացորենի, շաքարի ճակնդեղի, սիսեռի հաշվին կերի արտադրության ավելացման անհրաժեշտությունը: Այնուհետև կոմունիստները ժողով գումարեցին. հրավիրեցին անպարտիական ակտիվին և միացյալ ուժերով մշակեցին կոնկրետ միջոցառումներ:

Անցյալ տարի կոլտնտեսությունն ուներ մոտ հարյուր հեկտար մաքուր ցել: Այժմ այդ հողերը զբաղեցնում են բարձր բերքատու կուլտուրաները: Հերկեցին նաև 40 հեկտար բազմամյա խոտ: Մաքուր ցելը և խոտերը իրենց տեղը զիջում են բարձր բերքատու կուլտուրաներին. արդեն ցանվել են 80 հեկտար եգիպտացորեն, 15 հեկտար շաքարի ճակնդեղ, 4 հեկտար սիսեռ: Քառասուն հեկտարով ավելացել են գարնանացան հացահատիկների ցանքերը:

Կոլտնտեսությունում ինչպես միշտ, այնպես էլ այժմ առաջատար կուլտուրան է արդյունաբերական հումքի համար մշակվող շաքարի ճակնդեղը: Այն զբաղեցնում է 140 հեկտար: Այս տարի ճակընդեղագործները կիրառում են կոլտնտեսության համար նոր, առաջավոր ագրոտեխնիկական եղանակներ: Ահա ճակնդեղագործության էնտուզիաստներից մեկը՝ Նշան Աղոյանը: Կոմպլեքսային երկրորդ բրիգադայի ղեկավարն է նա, իսկ մինչ այդ վեց տարի աշխատել է որպես ագրոտեխնիկ. լավ է ուսումնասիրել շաքարի ճակնդեղը, գիտե նրա «բնավորության» շատ նրբությունները. սիրով է զբաղվում դրա մշակությամբ:

Աղոյանը պաշտպանեց օրգանական և հանքային պարարտանյութերի խառնուրդներ օգտագործելու մասին տրակտորիստ Մանուկյանի առաջարկը: Բրիգադավարի կատարած փորձերը նրան հանգեցրին այն եզրակացության, որ ճակնդեղի համար հատկացված հողի մշակման նախացանքային շրջանում անհրաժեշտ է ավելացնել պարարտանյութերի նորման: Նրա հետ համաձայն էր գյուղատնտեսը: Նախացանքային մշակմանը յուրաքանչյուր հեկտարին տվեցին հինգ տոննայով ավելի գոմաղբ, քան նախորդ տարիներին և երեք ու կես ցենտներով ավելի հանքային պարարտանյութ: Դրա շնորհիվ շաքարի ճակնդեղի արմատները աճման առաջին շրջանում ավելի լավ կըսնվեն:

Բրիգադավարը մեծ սիրով իր փորձը հաղորդում է երիտասարդ ճակնդեղագործներին: Երբեմն Աղոյանին կշտամբում են տաքարյունության, որոշ կոպտության համար: Վերջերս, այդպիսի մի կըշտամբանքից հետո հին կոմունիստներից մեկին նա ասաց.

— Ամեն մի լեռ իր լանջն ունի, ամեն մի մարդ՝ իր բնավորությունը: Մարդուս սիրտն էլ հո քուփրա չի, որ ամեն մեկի առաջ բացես:

— Առածները լավ բան են, բայց այս մեկը տեղին չի ասված,—պատասխանեց զրուցակիցը,— կոպտությունը բնավ ոչ ոքի չի զարդարել: Իսկ դու երբեմն պահանջկոտությունը շփոթում ես կոպտության հետ: Վերցրու մեր նախագահին, կամ բրիգադավար Նշան Վասիլյանին: Նրանք ուժեղ մարդիկ են, կարողանում են և՛ պահանջել, և՛ համոզել մարդուն: Բայց երբեք չեն կոպտում:

Ասում են Աղոյանը շնորհակալություն է հայտնել այդ տարեց կոլտնտեսականին՝ բարի խորհրդի համար: Հավատում ենք, որ այդ խոսակցությունը, ինչպես նաև կոլտնտեսության նախագահի դիտողություններն ու պարտկազմակերպության քարտուղարի զրույցները կօգնեն նրան՝ հղկելու և շտկելու իր բնավորությունը:

Մարտյան պլենումից հետո հաշվելով տնտեսության ներքին ռեզերվները, կշռադատելով եղած հնարավորությունները, կաթնաջուրցիները խոստացան հեկտարից ստանալ առնվազն 16 ցենտներ հացահատիկ, 307 ցենտներ շաքարի ճակընդեղ, 250 ցենտներ եգիպտացորենի կանաչ զանգված, 155 ցենտներ բանջարեղեն: Նոր, լուրջ բնագծեր են նշել անասնապահները. յուրաքանչյուր կովի կաթնատվությունը հասցնել 2300 կիլոգրամի, ամեն մի ոչխարից ստանալ 3,1 կիլոգրամ բուրդ, անասնապահական բոլոր տեսակի մթերքների վաճառքի տարեկան պլանը կատարել ոչ ուշ, քան մինչև հուլիսի 30-ը:

Կոլտնտեսության կոմունիստների գլխավոր խընդիրն է՝ լավ խնամել ցանքերը, կլիմայական բոլոր պայմաններում էլ բարձր բերք ստանալ, ապահովել ստանձնած պարտավորությունների կատարումը:

Շաքարի ճակնդեղի ցանքի թեժ օրերից մեկն էր: Վլադիմիր Ավագյանը վերադառնում էր դաշտից. փողոցում նրան պատահեցին մի խումբ ծերունիներ: Նրանք տաքանում էին արևի տակ, ծխում և խաղաղ զրուցում: Նրանք վաստակել են իրենց հանգիստը. կոլտնտեսությունը հոգացել է, որ նրանց ծերությունն ապահով լինի: Այս տարվա մարտից կոլտնտեսությունը 89 տարեցների կենսաթոշակ է նշանակել:

Ավագյանը շատ անգամ է ծերունիներից լսել, որ ձանձրալի է առանց աշխատանքի, առանց որևէ օգտակար գործով զբաղվելու: Բայց դեռևս ժամանակ չի եղել խորհելու այդ գանգատների մասին: Բայց որքա՛ն տնտեսական փորձ ու կյանքի իմաստություն կա կուտակված այդ պապիկների ու տատիկների մոտ: Որակի վերահսկիչների, խորհրդատուների, երիտասարդ կոլտնտեսականների ուսուցիչների մի մեծ խումբ է այդ: Չէ որ միայն մասնագետների վերահսկողությունն արդեն բավական չէ:

Երեկոյան արտելի վարչությունն ու պարտկազմակերպության բյուրոն թոշակառուներին հրավիրեցին խորհրդակցության: Երիտասարդները կատակում էին. «Միրուքավորների համագումար»: Բայց ամեն մեկն էլ հետաքրքրվում էր, թե ինչու են հավաքվել գյուղի ավագները: Սկզբում հրավիրվածներն իրենք էլ էին կարմացել:

— Այդ ինչպե՞ս է, որ մեզ հիշել են:

— Ի՞նչ առիթով եք կանչել մեզ:

— Կենսաթոշակի գրքույկնե՞ր եք հանձնելու, ինչ է:

— Ուզում ենք ձեզ հետ խորհրդակցել,— ասաց Ավագյանը: Եվ սենյակում անմիջապես լռություն տիրեց:

Նախագահը պատմեց կոլտնտեսության զարգացման հեռանկարների մասին, այն մասին, թե ինչ է արվել ու ինչ են մտածում անել պարտիայի Կենտկոմի Մարտյան պլենումից հետո:

— Մեզ պետք են ձեր կենսափորձն ու գիտելիքները, կյանքի ձեր իմաստությունը, ճանաչողությունը,— շարունակեց Ավագյանը,— ուզում ենք, որ դուք մոտիկ կանգնեք կոլտնտեսության գործերին, օգնեք մեզ ձեր խորհուրդներով ու կարծիքներով, ձեր անցյալ աշխատանքի լավագույն փորձով:

— Խելոք խոսքեր ես ասում, նախագահ,— նըկատեց ներկաներից ամենից ծեր, բայց դեռևս առույգ Յա. Ղևոնդյանը,— եթե բոլորս միասին գործի կպչենք, լեռներ շուռ կտանք:

Ժողովն աշխույժ անցավ: Մերթ խոսում էին բոլորը միասին, մերթ բորբոքված վիճում հետաքրքրասեր ու անհաշտ ծերունիները: Առանձնապես բուռն քննարկվեցին լքված հողերի օգտագործման, ճահճակալած տարածությունների ոռոգման, պարարտանյութի համար տորֆի հանույթի կազմակերպման, ոռոգման ջրերի ռացիոնալ օգտագործման հարցերը: Ավագյանը գրի էր առնում դիտողություն դիտողության հետևից: Եվ ուրախանում էր իր նախաձեռնության համար:

Որոշվեց ստեղծել ավագների խորհուրդ: Նախագահ ընտրեցին բոլորի կողմից հարգված, հողի ու կոլտնտեսային գործերին լավ գիտակ Կամսար Կարապետյանին: Ընտրեցին հասարակական 29 տեսուչներ, որոնք պետք է հսկեն որակը, միմյանց միջև բաժանեցին օղակները, բրիգադաները, ֆերմաները: Հաջորդ օրը նրանք ձեռնամուխ եղան իրենց հասարակական պարտականությունների կատարմանը: Կասկած չկա, որ կոլտնտեսությունը դրանից մեծ օգուտ կստանա:

...Գարունը տիրաբար քայլում է կոլտնտեսային դաշտերում: Ամենուրեք զգացվում է նրա կենսալից շունչը: Առատ անձրևներից ու հանքային պարարտանյութերից հետո փարթամորեն աճել է ցանքը: Երևացել են շաքարի ճակնդեղի առաջին ծիլերը, շուտով կծլի նաև եգիպտացորենը: Իսկ դաշտերում անդուլ ջանում են նախագահը, բրիգադավարները, օղակավարներն ու կոլտնտեսականները, որ ոչ մի թիզ հողի բերքը չփչանա, ոչ մի թիզ հող չամլանա: Նրանք քչաչ են խոսում իրենց աշխատանքի, սպասվող բերքի մասին, բայց նրանց աչքերում առկայծում են ուրախությունն ու հպարտությունը: Այդպես է մեր աշխատանքի մարդը: Իսկ այդ մարդու համար ամենաթանկագինը այն է, ինչի մեջ իր աշխատանքը, դրա հետ էլ սիրտն ու հոգին է դրել:

Ի. ՏՈՄՁԻՆ

Կաթնաջուր, Սպիտակի շրջան

---

## ՍՄԿՊ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

## ԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ-ՍՈՎԽՈԶԱՅԻՆ (ՍՈՎԽՈԶԱՅԻՆ-ԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ) ՏԵՐԻՏՈՐԻԱԼ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ԿՈՄՊԱՐՏԻԱՆԵՐԻ ԿԵՆՏԿՈՄՆԵՐԻ, ՊԱՐՏԻԱՅԻ ԵՐԿՐԿՈՄՆԵՐԻ, ՄԱՐԶԿՈՄՆԵՐԻ ՊԱՐՏԿԱԶՄԱԿԵՐՊԻՉՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Օրերս ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն ընդունեց որոշում «Կոլտնտեսային-սովխոզային (սովխոզային-կոլտնտեսային) տերիտորիալ արտադրական վարչություններում միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմների, պարտիայի երկրկոմների, մարզկոմների պարտկազմակերպիչների մասին»:

Ի կատարումն ՍՄԿՊ Կենտկոմի Մարտյան պլենումի «Կոմունիստական շինարարության ներկա էտապը և պարտիայի խնդիրները գյուղատնտեսության ղեկավարման բարելավման ուղղությամբ» որոշման, ՍՄԿՊ Կենտկոմը որոշեց կոլտնտեսային-սովխոզային (սովխոզային-կոլտնտեսային) տերիտորիալ արտադրական վարչություններում սահմանել միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմների, պարտիայի երկրկոմների, մարզկոմների պարտկազմակերպիչների պաշտոններ:

# ԱՄՍԱԳՐԵՐԻ ԷՋԵՐԻՑ

## ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ՍՄԿՊ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՂՆԵՐԻՆ

## Вопросы истории КПСС

Ստորև հրապարակում ենք ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի դիրեկտոր Պ. Ն. Պոսպելովի «Պարտիայի պատմության գծով գիտա-հետազոտական աշխատանքի խնդիրների մասին» հոդվածից մի հատված, որը տպագրված է «Вопросы истории КПСС» ժուռնալի 1962 թվականի № 2-ում։

Ստալինի անձի պաշտամունքի երկարատև տիրապետությունը հսկայական վնաս հասցրեց հասարակական գիտությունների և հատկապես, պարտիայի պատմության գիտության զարգացմանը։ Անհատի պաշտամունքի ազդեցության ներքո նսեմացվում էր Լենինի և նրա զինակիցների դերը պարտիայի պատմության մեջ, նվազեցվում մարքսիզմի զարգացման մեջ լենինյան էտապի և բոլշևիզմի բազմահարուստ փորձի նշանակությունը, մոռացության էին մատնվում մարքսիզմ-լենինիզմի կարևորագույն դրույթները ժողովրդի՝ որպես պատմության կերտողի, ռևոլյուցիոն պայքարի, սոցիալիզմի և կոմունիզմի շինարարության մեջ մարքսիստական պարտիայի ղեկավար դերի վերաբերյալ։

Գիտահետազոտական աշխատանքը և պարտիայի պատմության դասընթացի ավանդումը արհեստականորեն սահմանափակվում էին «ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթացում» լուսաբանված հարցերի շրջանակով, մի դասընթաց, որը գրված էր Ստալինի անձի պաշտամունքի ոգով։ Խախտվում էր պարտիայի պատմության լենինյան պերիոդիզացիան։ Հակառակ Լենինի այն մատնանշման, որ բոլշևիզմը որպես քաղաքական մտքի հոսանք և որպես քաղաքական պարտիա գոյություն ունի 1903 թվականից, պնդում էին, թե իբր բոլշևիկյան պարտիայի սկիզբը դրվել է միայն 1912 թվականին, Պրագայի պարտիական կոնֆերանսում։

Անհատի պաշտամունքի պայմաններում նսեմացվում էր Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի աշխատությունների նշանակությունը։ Մասնավորապես Վ. Ի. Լենինի կողմից մարքսիստական ուսմունքի բոլոր կողմերը ստեղծագործաբար մշակելը կապվում էր միայն որոշակի, սահմանափակ պատմական ժամանակաշրջանի հետ։ Միևնույն ժամանակ անիրավացիորեն փառաբանվում էին Ի. Վ. Ստալինի աշխատությունները, թեպետև դրանցում հաճախ լինում էին սխալ դրույթներ, որոնք վնաս էին հասցնում տեսությանը և պրակտիկային։ Հայտնի է, որ ինքը՝ Ստալինը, ընդունել է վաղ շրջանի իր աշխատությունների («Պրոլետարների դասակարգը և պրոլետարների պարտիան», «Համառոտակի պարտիական տարաձայնությունների մասին», «Անարխի՞զմ, թե՞ սոցիալիզմ» և այլն) խակ լինելը, դա բացատրելով նրանով, որ այդ տարիներին ինքը դեռևս երիտասարդ մարքսիստ էր, դեռևս չէր ձևավորվել որպես «ավարտուն մարքսիստ—լենինյան»։ Օրինակ, լուրջ քննադատության են արժանի Ստալինի էական սխալները ագրարային հարցի շուրջը ռուսական առաջին ռևոլյուցիայի ժամանակաշրջանում, փիլիսոփայական հարցերի վերաբերյալ նրա գրված խառնաշփոթ, հակասական դիրքը այն շրջանում, երբ Վ. Ի. Լենինը պայքարում էր փիլիսոփայության բնագավառում մարքսիզմի ռևիզիայի փորձերի դեմ, ինչպես նաև ոչ բավարար հետևողական այն դիրքը, որ երբեմն գրավում էր Ստալինը լիկվիդատորության դեմ մղվող պայքարի հարցերում։

Իր վաղ շրջանի աշխատություններում եղած որոշ սխալները Ստալինը փորձում էր արդարացնել նրանով, թե իբր բոլոր մարքսիստները, նշանակում է նաև Վ. Ի. Լենինը, այն ժամանակ նույնպիսի հայացքներ ունեին։ 1946 թվականին Ստալինը իր երկերի առաջին հատորի առաջաբանում պնդում էր, որ «Անարխի՞զմ, թե՞ սոցիալիզմ» հոդվածում ինքը պաշտպանում էր այն ժամանակվա «մարքսիստների շրջանում հայտնի» այն թեզիսը, թե սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի գլխավոր պայմաններից մեկը այն պետք է լինի, որ պրոլետարիատը դառնա բնակչության մեծամասնությունը։ Ռևոլյուցիոն մարքսիստների հայացքների այդպիսի գնահատականը սխալ է։ Վ. Ի. Լենինը միշտ էլ գտնում էր, որ Ռուսաստանի պրոլետարիատի քաղաքական դերը շատ ավելի մեծ կլինի, քան նրա բաժինը երկրի բնակչության ընդհանուր զանգվածում։ Նա հսկայական նշանակություն էր տալիս Ռուսաստանի բանվոր դասակարգի մեծ չափով համակենտրոնացված լինելուն խոշոր ձեռնարկություններում և արդյունաբերական շրջաններում։ Ստեղծագործաբար զարգացնելով Մարքսի այն դրույթը, որ նա հայտնել էր 1856 թվականին պրոլետարական ռևոլյուցիան «գյուղացիական պատերազմի» հետ միացնելու հընարավորության մասին, Լենինը գիտականորեն ապացուցեց, որ ռևոլյուցիոն պրոլետարիատի ու աշխատավոր գյուղացիության դաշինքը դեմոկրատական և սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի հիմնական պայմանն է։ Պրոլետարիատի ղեկավարությամբ ստեղծված այդպիսի դաշինքը անչափ մեծացնում է պրոլետարիատի ղեկավար դերը և նրա ռևոլյուցիոն ուժը։ Լենինը այդ գաղափարները առաջ էր քաշել ու զարգացրել դեռևս իր առաջին երկերում և առանձնապես խորապես հիմնավորել էր 1905—1907 թվականների ռևոլյուցիայի ժամանակաշրջանին վերաբերող աշխատություններում։ Ոչնչացնող քննադատության ենթարկելով ռևիզիոնիստներին, նա 1908 թվականին գրում էր. «Խորապես սխալ կլինի կարծել, թե այդպիսի (պրոլետարական— Պ.Պ.) ռևոլյուցիայի իրականացման համար անհրաժեշտ է բնակչության մեծամասնության «լիակատար» պրոլետարացում»[1]։ Այսպիսով, հակառակ Ստալինի պնդմանը, դեռ այն ժամանակ երբ հրապարակվել էր նրա «Անարխի՞զմ, թե՞ սոցիալիզմ» հոդվածը, Վ. Ի. Լենինը և մյուս ռևոլյուցիոն մարքսիստները հերքել էին II Ինտերնացիոնալի լիդերների հին դոգման ռևոլյուցիայի հաղթանակի համար բնակչության մեծամասնության պրոլետարացման անհրաժեշտության մասին։

Իհարկե, Ստալինը ծառայություններ ուներ մեր պարտիայի հանդեպ, ռևոլյուցիոն կոմունիստական շարժման հանդեպ, այդ թվում նաև տեսության բնագավառում։ Սակայն պետք է քննադատորեն վերաբերվել նրա մի շարք աշխատություններին, հատկապես, նրա կյանքի վերջին շրջանի աշխատություններին ու ելույթներին։ Անհրաժեշտ է նաև քննադատել Ստալինի այն սխալները, որ նա թույլ է տվել իր գործունեության տարբեր էտապներում։

Աշխատելով մեր երկրում սոցիալիստական ռևոլյուցիայի նախապատրաստման ու անցկացման պրոբլեմների վրա, պարտիայի պատմաբանները պարտավոր են լիովին ու մանրամասն ուսումնասիրել փաստաթղթային, մասնավորապես արխիվային նյութը, որպեսզի ճիշտ արտացոլեն այն դրությունը, որ ստեղծվել էր պարտիայում 1917 թվականին Լենինի Ռուսաստան վերադառնալուց առաջ։ Մերկացնելով Կամենևի, Ռիկովի և մյուսների կապիտուլյանտական դիրքը, անհրաժեշտ է նաև ցույց տալ Ստալինի սխալ դիրքը մի շարք

1 Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 15, էջ 32։

այնպիսի հարցերում, ինչպիսիք են հաշտության, ցիմերվալդականների հետ միավորվելու, ժամանակավոր կառավարության նկատմամբ ունենալիք վերաբերմունքի հարցերը:

Հայտնի է, որ 1917 թվականին մարտյան պարտիական խորհրդակցությանը Ստալինը տատանումներ թույլ տվեց բուրժուական կառավարության նկատմամբ ունենալիք վերաբերմունքի հարցում: Խոսելով ժամանակավոր կառավարությանը պայմանական աջակցություն ցույց տալու հնարավորության մասին նա հայտարարում էր. «Աջակցության հարցը թեկուզ և անընդունելի է: Որքանով ժամանակավոր կառավարությունը ամրացնում է ռևոլյուցիայի քայլերը,— այդքանով էլ աջակցություն, իսկ որքանով որ նա հակառևոլյուցիոն է,— ժամանակավոր կառավարությանն աջակցելը անընդունելի է»: Դրա հետ մեկտեղ դիսկուսիայի ընթացքում Ստալինը հրաժարվեց ժամանակավոր կառավարությանը պայմանական աջակցություն ցույց տալու դիրքից և եզրափակիչ խոսքում հայտարարեց, թե «տրամաբանական չէ ժամանակավոր կառավարությանը աջակցելու մասին խոսելը»: Նրա առաջարկությամբ մարտի 31-ին պարտիական խորհրդակցության բանաձևից հանվեց ժամանակավոր կառավարությանն աջակցելու վերաբերյալ կետը:[2] 1917 թ. մարտի 16-ին Ստալինը «Պատերազմի մասին» հոդվածում կոչ էր անում ճնշում գործադրել ժամանակավոր կառավարության վրա, պահանջելով, որ նա հայտարարի անհապաղ հաշտության բանակցություններ սկսելու իր համաձայնության մասին[3]: Այդպիսի դիրքորոշումը հակասում էր Լենինի ցուցումներին, որը 1917 թ. մարտի 12-ին գրել էր. «Դիմել այդ կառավարությանը դեմոկրատական հաշտություն կնքելու առաջարկությամբ՝ միևնույն է, թե հասարակաց տներ պահողներին դիմել առաքինության քարոզով»[4]:

Հարկավոր է նաև բացահայտել Ստալինի անհետևողականությունը Լենինի դատարան ներկայանալու հարցում: 1917 թ. հուլիսի 7-ին Ալլիլուևի բնակարանում տեղի ունեցած խորհրդակցությանը Ստալինը դեմ արտահայտվեց այն բանին, որ Լենինը ներկայանա իշխանություններին, հայտարարելով. «Յունկերները չեն հասցնի մինչև բանտ, կսպանեն ճանապարհին»[5]: Բայց պարտիայի VI համագումարում Ստալինը հստակ, ճիշտ դիրք չգրավեց: Նորից դեմ արտահայտվելով այն բանին, որ Լենինը տվյալ մոմենտին ներկայանա դատարան, նա միևնույն ժամանակ ասում էր. «Իսկ եթե լինի այնպիսի իշխանություն, որը կարողանա մեր ընկերներին ապահովել բռնություններից, որը թեկուզ մի որոշ պատիվ կունենա... նրանք կներկայանան»[6]:

Հանրահայտ է Կամենևի և Զինովևի շտրեյկբրեխերությունը 1917 թվականի հոկտեմբերի զինված ապստամբության նախօրեին: Հայտնի է նաև, թե Վ. Ի. Լենինը ինչպիսի զայրույթով դատապարտեց նրանց վարքագիծը, այն գնահատելով որպես դավաճանություն պարտիայի ու ռևոլյուցիայի գործին: Մինչդեռ Ստալինը այդ հարցում, ըստ էության, հաշտվողական դիրք գրավեց: Նա իր անձնական նախաձեռնությամբ, առանց խմբագրության մյուս անդամների գիտության, «Պրավդայում» հրապարակեց Զինովևի նամակը, դրան խմբագրության անունից կցելով հետևյալ հայտարարությունը. «Մենք մեր հերթին հույս ենք հայտնում, որ ընկ. Զինովևի արած հայտարարությամբ (ինչպես նաև Սովետում ընկ. Կամենևի հայտարարությամբ) հարցը կարելի է սպառված համարել: Ընկ. Լենինի հոդվածի խիստ տոնը չի փոխում այն բանը, որ մենք հիմնականում համախոհներ ենք մնում»[7]: Կենտկոմի 1917 թ. հոկտեմբերի 20-ի նիստում, երբ քննվում էր Լենինի նամակը երկու շտրեյկ-

2. Տե՛ս «Ռևոլյուցիոն շարժումը Ռուսաստանում ինքնակալության տապալումից հետո»: Փաստաթղթեր և նյութեր, Մ, 1957, էջ 132, 140, 146—147:

3 Տե՛ս Ի. Վ. Ստալին, Երկեր, հ. 3, էջ 8:

4 Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 23, էջ 446—447:

5 «Պրավդա», 1924 թ., մարտի 28: Ս. Օրջոնիկիձեի հիշողությունները:

6 «ՌՍԴԲՊ(բ) վեցերորդ համագումարը» արձանագրություններ: Մ, 1958, էջ 28:

7 «ՌՍԴԲՊ(բ) Կենտրոնական Կոմիտեի արձանագրությունները», Մ, 1958, էջ 115:



բրեխերներին պարտիայից վտարելու պահանջով, Ստալինը առաջարկեց այդ հարցը չլուծել մինչև պարտիայի Կենտկոմի պլենումը: Ահա թե ինչպիսի վերաբերմունք ցույց տվեց այդ բանին Լենինը: Յա. Մ. Սվերդլովին ղրկած նամակում նա գրում էր. «Ինչպես երևում է, ինձ չի հաջողվի լինել պլենումում, որովհետև ինձ «բռնում են»: Զին[ովևի] և Կամ[ենևի] գործով, եթե դուք Ստալինը, Սոկ[ոլնիկովը] և Ձեր[ժինսկին] կոմպրոմիս եք պահանջում, իմ դեմ առաջարկություն մտցրեք գործը պարտիական դատարանին հանձնելու մասին (փաստերը պարզ են, որ Զին[ովևը] դիտավորյալ էր վիժեցնում). դա կլինի հետաձգել»[8]:

Անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում չափից ավելի գերագնահատվում էր Ստալինի դերը քաղաքացիական պատերազմի և Հայրենական Մեծ պատերազմի տարիներին: Քաղաքացիական պատերազմի պատմության մի քանի հարցերի և Ստալինի դերի սխալ մեկնաբանման սկիզբը այդ ժամանակաշրջանում դրվել էր Կ. Ե. Վորոշիլովի «Ստալինը և Կարմիր Բանակը» հոդվածով, որը հրապարակվել էր 1929 թվականին Ստալինի 50-ամյակի կապակցությամբ: Այդ հոդվածում Ստալինը, ըստ էության, նկարագրվում է որպես 1918—1920 թվականներին ռազմաճակատներում ստեղծված դրության փրկիչ: Նրան էին վերագրված գրեթե այն բոլոր հաջողությունները, որ այդ տարիներին ձեռք էին բերել պարտիան և սովետական ժողովուրդը: Դրա հետևանքով պարտիայի, նրա Կենտրոնական Կոմիտեի, Վ. Ի. Լենինի դերը նսեմացվել էր երկրի պաշտպանությունը կազմակերպելու գործում:

Չի կարելի ժխտել այն բանը, որ Ստալինը պարտիայի Կենտկոմի հանձնարարությամբ մասնակցել է ռազմական գործողությունների կազմակերպմանն ու ղեկավարմանը: Սակայն նա ռազմական աշխատանքում թույլ է տվել լուրջ սխալներ, ընդհուպ մինչև ՌԿ(բ)Պ Կենտկոմի որոշումներին չենթարկվելը: Բերենք 1920 թվականին վերաբերող մի օրինակ, երբ Սովետական ռեսպուբլիկան հարկադրված էր պայքար մղել բուրժուա-կալվածատիրական Լեհաստանի և Վրանգելի դեմ: 1920 թ. օգոստոսի 2-ին ՌԿ(բ)Պ Կենտկոմի Քաղբյուրոն որոշեց ստեղծել ինքնուրույն ռազմաճակատ Վրանգելի դեմ պայքարելու համար, իսկ Պիլսուդսկու զորքերի դեմ գործող բանակները միավորել Արևմտյան ռազմաճակատի կազմի մեջ: Ընդունված որոշման մասին Վ. Ի. Լենինը հայտնեց Ստալինին: Պատասխան նամակում Ստալինը կոպիտ ձևով հայտնեց իր դժգոհությունն այդ որոշումից, հայտարարելով. «Ստացա Ձեր երկտողը ռազմաճակատները բաժանելու մասին, Քաղբյուրոն չպետք է զբաղվեր դատարկ բաներով»[9]: Վ. Ի. Լենինը համբերատար կերպով Ստալինին պարզաբանում էր Հարավային ռազմաճակատ ստեղծելու և լեհական ռազմաճակատում բոլոր բանակները միավորելու քաղաքական և ստրատեգիական անհրաժեշտությունը: Կենտկոմի պլենումը օգոստոսի 5-ին որոշեց 12-րդ, 14-րդ և 1-ին Հեծյալ բանակը Հարավ-արևմտյան ռազմաճակատից տեղափոխել Արևմտյան ռազմաճակատի կազմի մեջ: Ստալինը օգոստոսի 13-ին կատեգորիկ կերպով հրաժարվեց հիշյալ բանակները Արևմտյան ռազմաճակատին հանձնելու դիրեկտիվը ստորագրելուց, ոտք դնելով ՌԿ(բ)Պ Կենտկոմի որոշումն ուղղակի չկատարելու ուղին:

Լեհաստանի դեմ մղված պատերազմում կատարած սխալների հարցը Լենինը ամենաբարդ հարցերից մեկն էր համարում և ուղղակի մատնանշում էր, որ դրանք մինչև վերջ քննելը «ապագա պատմաբանների գործը պիտի լինի»[10]: Վարշավայի տակ սովետական զորքերի կրած անհաջողությունները բացատրվում էին ոչ միայն օբյեկտիվ դժվարություններով, այլև մեր ուժերի գերագնահատումով, ինչը որ հետագայում մատնանշում էր Վլադիմիր Իլյիչը պարտիայի X համագումարում Կենտկոմի հաշվետվության մեջ: Որոշակի բա-

8 «Հոկտեմբերյան զինված ապստամբությունը Պետրոգրադում»: Փաստաթղթեր և նյութեր, Մ, 1957, էջ 66:

9 XXXVI Լենինյան ժողովածու, էջ 116:

10 Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 32, էջ 205:

ցասական դեր խաղաց այն դիմադրությունը, որ ցույց տվեց Ստալինը 1-ին Հեծյալ, 12-րդ և 14-րդ բանակները Հարավ-արևմտյան ռազմաճակատից Արևմտյան ռազմաճակատի զորքերին հանձնելու վերաբերյալ պարտիայի Կենտկոմի որոշման իրականացմանը։

ՍՄԿՊ XX համագումարի որոշումների հիման վրա սովետական պատմաբանները, հասարակական գիտությունների ամբիոնները խոշոր և բեղմնավոր աշխատանք են կատարել քաղաքացիական պատերազմի պատմության լուսաբանման բնագավառում անհատի պաշտամունքի վնասակար հետևանքները հաղթահարելու ուղղությամբ։ Այստեղ տեղին է հիշել «ՍՍՌՄ քաղաքացիական պատերազմի պատմության» (3-րդ, 4-րդ և 5-րդ հատորները և «ՍՍՌՄ քաղաքացիական պատերազմի պատմությունից» փաստաթղթերի երեք հատորների հրատարակությունը, որոնք պատրաստել է ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտը։ XX համագումարից հետո լույս տեսած այդ աշխատություններում և փաստաթղթերի ժողովածուներում հիմնականում վերացված են քաղաքացիական պատերազմի իրադարձությունների լուսաբանման հարցում եղած խեղաթյուրումները, թեպետև դեռևս կան որոշ թերություններ, որոնց մասին հիշատակեց Մ. Ա. Սուսլովը հասարակական գիտությունների ամբիոնների ղեկավարների Համամիութենական խորհրդակցության ժամանակ։ Այդ հատորներում լայնորեն ցույց է տրված Կոմունիստական պարտիայի դերը որպես քաղաքացիական պատերազմի տարիներին մեր հաղթանակների ոգեշնչողի ու կազմակերպչի և Վ. Ի. Լենինի դերը որպես Սովետական երկրի պաշտպանության կազմակերպչի ու ղեկավարի, բացահայտվում է ժողովրդական մասսաների վճռական դերը հաղթանակը ձեռք բերելու գործում։ Բայց դա քաղաքացիական պատերազմի պատմության իսկական գիտական ուսումնասիրության սոսկ սկիզբն է։ ՍՄԿՊ XXII համագումարի որոշումների լույսի տակ պետք է շարունակել և խորացնել այդ աշխատանքը։

ՍՄԿՊ XX համագումարում մատնանշվեցին այն խոշոր սխալները, որ Ստալինը թույլ էր տվել Հայրենական Մեծ պատերազմի նախօրեին և պատերազմի ընթացքում։ Հայրենական Մեծ պատերազմի պատմության լույս տեսած երեք հատորներում պատմական փաստաթղթային հարուստ նյութի հիման վրա ցույց են տրված այդ սխալների չափազանց ծանր հետևանքները (Կարմիր Բանակի մեծ անհաջողությունները պատերազմի սկզբին, կատաստրոֆը Կիևի տակ, մեր զորքերի պարտությունը Խարկովի տակ 1942 թ. մայիսին և այլ փաստեր Ստալինի սխալ ցուցումների հետևանք են)։ Միմիայն լենինյան պարտիայի մեծ արիության ու կազմակերպվածության, քաջարի Կարմիր Բանակի և ամբողջ սովետական ժողովրդի անձնուրաց մասսայական հերոսության ու կայունության շնորհիվ հաջողվեց հաղթահարել պատերազմի առաջին ժամանակաշրջանում Ստալինի թույլ տված սխալների խիստ վտանգավոր հետևանքները և, վերջին հաշվով, լիակատար հաղթանակ տանել գերմանական ֆաշիզմի դեմ։

Ստալինը քիչ սխալներ թույլ չի թվել նաև սոցիալիզմի և կոմունիզմի շինարարության տեսական հարցերում։ Օրինակ, «Լենինիզմի հիմունքների մասին» աշխատության մեջ, որն ամբողջությամբ վերցրած դրական նշանակություն ունի, ասվում է, թե «պրոլետարիատի դիկտատուրայի մահանալով պետք է մահանա նաև պարտիան» [11]։

Միակ ճիշտ լուծումը այդ, ինչպես նաև մյուս հարցերում մարքս-լենինյան ուսմունքի հիրավի ստեղծագործական զարգացումը տրված է Վ. Ի. Լենինի աշխատություններում, ՍՄԿՊ XX, XXI և XXII համագումարների նյութերում և այդ համագումարներում Ն. Ս. Խրուշչովի տված զեկուցումներում։ Մարքս-լենինյան տեսության ստեղծագործական զարգացման գագաթնակետը ՍՄԿՊ նոր Ծրագիրն է։ Այդ մեծագույն փաստաթուղթը գիտականորեն հիմնավորել է նաև պրոլետարիատի դիկտատուրայի և պարտիայի հարցը կոմունիզմի ծավալուն կառուցման պայմաններում։ Ապահովելով կոմունիզմի առաջին փուլի՝

11 Ի. Վ. Ստալին, Երկեր, հ. 6, էջ 209։



սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակը և հասարակության անցումը դեպի կոմունիզմի ծավալուն կառուցումը, պրոլետարիատի դիկտատուրան կատարել է իր պատմական միսիան և ներքին զարգացման խնդիրների տեսակետից դադարել է անհրաժեշտ լինելուց ՍՍՌՄ-ում։ Այլ կերպ է դրվում պարտիայի հարցը։ ՍՍՌՄ-ում սոցիալիզմի հաղթանակի, սովետական հասարակության միասնության ամրապնդման հետևանքով Կոմունիստական պարտիան բանվոր դասակարգի պարտիայից վերածվել է սովետական ժողովրդի ավանգարդի, դարձել է ամբողջ ժողովրդի պարտիա, ընդլայնել է իր ուղղություն ցույց տվող ազդեցությունը հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա։ Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում գնալով ավելի են աճում պարտիայի դերն ու նշանակությունը որպես սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժի, որը գլխավորում է ժողովրդի պայքարը հանուն հետևյալ վիթխարի եռմիասնական խնդրի լուծման՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծում, կոմունիստական հասարակական հարաբերությունների ձևավորում, կոմունիզմի դարաշրջանի նոր մարդու դաստիարակություն։

Մեր պարտիայի Ծրագրում ցույց են տրված այն պատճառները, որոնք պայմանավորում են պարտիայի դերի բարձրացումը սովետական հասարակության զարգացման նոր էտապում։ Դրանց թվին են պատկանում՝ կոմունիստական շինարարության խնդիրների մասշտաբների աճը և բարդությունը, որոնք քաղաքական ու կազմակերպական ղեկավարության ավելի բարձր մակարդակ են պահանջում, մասսաների ստեղծագործական ակտիվության վերելքը, սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացումը, գիտական կոմունիզմի տեսության աճող նշանակությունը, աշխատավորների կոմունիստական դաստիարակության ուժեղացման անհրաժեշտությունը, մարդկանց գիտակցության մեջ անցյալի մնացուկների հաղթահարման պայքարի անհրաժեշտությունը։ Այս բոլոր բարդ պրոցեսները կծավալվեն Կոմունիստական պարտիայի, նրա քաղաքականության վճռական ներգործությամբ։ Հետևապես, խոսք անգամ չի կարող լինել պարտիայի մահացման մասին այնքան ժամանակ, քանի դեռ կոմունիստական հասարակությունը լիովին չի զարգացել իր սեփական հիմքի վրա և քանի դեռ կոմունիզմը չի դադարել պայքարի օբյեկտ լինելուց միջազգային մասշտաբով։

Կարևոր նշանակություն ունի Սովետական պետության հարցում Ստալինի սխալ հայացքների, պետության լենինյան ուսմունքը նսեմացնելու նրա փորձերի քննադատությունը։ Պարտիայի XVIII համագումարում տված զեկուցման մեջ Ստալինը նսեմացրեց Վ. Ի. Լենինի դերը, նրա «Պետություն և ռևոլյուցիա» աշխատության նշանակությունը համարելով միայն այն, որ դա պետության վերաբերյալ Մարքսի և Էնգելսի դրույթների պաշտպանությունն է օպորտունիստների խեղաթյուրումից ու գռեհկացումից, իսկ այդ դրույթների ստեղծագործական զարգացումը վերագրեց Վ. Ի. Լենինի աշակերտներին, այսինքն՝ իրեն։ Բնութագրելով Սովետական պետության ֆունկցիաները նրա առաջին փուլում (Հոկտեմբերից մինչև շահագործող դասակարգերի վերացումը), Ստալինը նսեմացրեց մեր պետության օրգանների տնտեսական կազմակերպչական և կուլտուր-դաստիարակչական աշխատանքը, հայտարարելով, թե այդ ժամանակաշրջանում այդ ֆունկցիան լրջորեն չէր զարգացել։

Անհրաժեշտ է նաև հաղթահարել անհատի պաշտամունքի հետևանքները այնպիսի մի կարևորագույն պրոբլեմի լուսաբանման ասպարեզում, ինչպիսին է գյուղատնտեսության կոլեկտիվացումը։ Լենինյան կոոպերատիվ պլանի հիման վրա գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխությունը, ինչպես ասված է ՍՄԿՊ Ծրագրում, հիրավի մեծ ռևոլյուցիա էր բազմամիլիոն գյուղացիության տնտեսական հարաբերություններում, նրա ամբողջ կացութաձևում։ Բայց չի կարելի համաձայնել «ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթացի» այն թեզի (էջ 416) հետ, թե կոլեկտիվացումը, խորագույն հեղաշրջում հանդիսանալով, իր հետևանքներով իբր թե համասար է 1917 թվականի հոկտեմբերի ռևոլյուցիոն հեղաշրջմանը։ Այդպիսի համեմատությունը ճիշտ չէ,

# Գիտության աշխարհում

## ԱՌԵՂԾՎԱԾԱՅԻՆ ՆԵՅՏՐԻՆՈՆԵՐԸ


ԲՐՈՒՆՈ ՊՈՆՏԵԿՈՐՎՈ

ՍՍՌՄ ԳԱ թղթակից անդամ


Մի անգամ, սրանից քսան տարի առաջ, ես զբոսնում էի ծովափնյա անծայր և գրեթե ամայի դաշտերում: Դեպի ինձ շարժվող բեռնատար ավտոմոբիլն արագորեն կանգնեց փոշու ամպի մեջ, և վարորդը հարցրեց ինձ. «Դուք չե՞ք տեսել արդյոք նեյտրոնին»: Նա փնտրում էր այն ապարատուրայով բարձված բեռնատար ավտոմոբիլը, որը նախատեսված էր «նեյտրոնային կարոտաժի»՝ նեյտրոնների աղբյուրն օգտագործող նավթի գեոֆիզիկական հետախուզության մեթոդի համար:

Այն ժամանակ դեռ չկային ո՛չ ատոմային էլեկտրակայաններ, ո՛չ ատոմային սառցահատներ, ո՛չ ատոմային ռեակտորներ, դեռ չէին սկսվել ջերմամիջուկային ռեակցիաների օգտագործման հետազոտությունները, չկային, փառք աստծու, ո՛չ ատոմային, ո՛չ ջրածնային ռումբեր: Մի խոսքով, այդ նախքան, այսպես կոչված, «ատոմային դարաշրջանի» սկիզբն էր: Եվ ինձ համար չափազանց զարմանալի ու հաճելի էր, որ հասարակ մարդկանց կենցաղի մեջ, գոնե նավթային շրջաններում, մտել էր նեյտրոնը՝ իմ սիրելի մասնիկը, որը հոգումս ես կապում էի իտալացի մեծ ֆիզիկոս Էնրիկո Ֆերմիի և նրա աշխատակիցների շատ հետաքրքրական, բայց կյանքից շատ հեռու թվացող հետազոտությունների հետ:

Ի միջի այլոց, որոշ ժամանակ անց ես պատմեցի Ֆերմիին «նեյտրոնային բեռնատար ավտոմոբիլի» հետ պատահած միջադեպը: Նա հրապուրվեց դրանով և նկատեց, որ նեյտրոններն ու մյուս տարրական մասնիկները շուտով ամենուրեք հանրամատչելի կդառնան: Ինչպես հայտնի է, մեր դարաշրջանի ողբերգությունն այդ նախագուշակության ճշմարտացիությունն է: Այժմ ո՛չ միայն ֆիզիկայի պրոֆեսորներն ու նավթագործները, այլև գրականագետները, նկարիչներն ու բանվորները, համենայնդեպս, լսել են նեյտրոնների մասին և, թերևս, գիտեն, որ դրանք ատոմային ռեակտորներում և ատոմային ռումբերում գլխավոր գործող անձինք են: Բոլորն էլ գիտեն, որ նեյտրոններն ու մյուս տարրական մասնիկները՝ ֆոտոնները, էլեկտրոնները, վտանգավոր են, եթե մարդկային մարմինը ենթարկվում է այդ մասնիկների մեծ դոզաներով ճառագայթահարման: «Մեկ տարվա ինն օրը» նոր կինոֆիլմը հրապուրում է հանդիսատեսներին (հիմնականում՝ ոչ ֆիզիկոսներին), չնայած նրան, որ այնտեղ նեյտրոնների, ռեակտորների և ջերմամիջուկային ռեակցիաների հետազոտությունների սիրո մասին խոսում են նույնպիսի սովորական տոնով, ինչպես մյուս կինոֆիլմերում՝ ավտոմոբիլների, ձիերի և խանդի մասին: Իրոք, տարրական մասնիկների աշխարհը (այդպես են անվանում այն միկրոօբյեկտները, որոնց կազմությունը դեռ անհայտ է) արդեն մութ անտառ չէ «նորմալ» մարդկանց համար:

Միկրոաշխարհի այդ հանրամատչելիությունը դեռ չի տարածվել բոլոր տարրական մասնիկների վրա: Նրանցից մեկը՝ նեյտրինոն (իտալերեն նեյտրինո նշանակում է «չեզոքիկ») շատ քիչ է հայտնի: «Իզվեստիա» օրաթերթը խնդրել էր ինձ հոդվածով հանդես գալ **նեյտրինոնային** աստղագիտության մասին, բայց խմբագրությունից ստացածս հեռագրում խոսքը **նեյտրոնային** աստղագիտության մասին էր: Ես այդ մասին հիշեցի ոչ թե նրա համար, որպեսզի վրիպակով պատճառաբանեմ մինչև այժմ միայն նեյտրոնների մասին խոսելս: Հեռագրողի այդ վրիպակը բացահայտորեն պայմանավորված է նեյտրոնի հանրամատչելիությամբ և նեյտրինոյի անճանաչությամբ:

Խե՛ղճ նեյտրինո: Բայց միշտ այդպես չի լինի. ես համոզված եմ, որ մոտ ապագայում այն պատշաճ համբավ կվայելի, նույնիսկ եթե մտնի մարդկանց կենցաղի մեջ ոչ այնպես ողբերգական ձևով, ինչպես մտավ նեյտրոնը մեր կենցաղի մեջ: Բանն այն է, որ նեյտրինոները հսկայական դեր են խաղում տարրական մասնիկների փոխազդման և փոխադարձ փոխարկման որոշ հիմնավոր օրենքները հասկանալու համար: Նեյտրինոները մասնակցում են նուրբ, բարդ, բայց զարմանալիորեն հրապուրիչ պրոցեսների, որոնց պարզաբանման հետ, անպայման, կապված կլինի մեր ֆիզիկական պատկերացումների հեղաշրջումը: Նեյտրինոները շատ մեծ դեր են խաղում նաև աստրոֆիզիկայում:



Անշուշտ, տարրական մասնիկների որոշ տեսակների (նեյտրինոներ, մեզոններ, հիպերոններ) գործնական կիրառման բացակայությունը չի նվազեցնում նրանց հատկությունների հետազոտությունների կարևորությունը: Այստեղ հատկապես տեղին չէ նեղ էմպիրիզմը (ինչպես՝ «Իսկ ի՞նչ է տալիս նեյտրինոն Ռյազանի կոլտնտեսականներին»): Ահա թե ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ ակադեմիկոս Մ. Վ. Կելդիշը ինչպես բնորոշեց հետազոտությունների նշանակությունը տարրական մասնիկների բնագավառում. «Էներգիայի աղբյուրների հայտնագործման բնագավառում ամենից ավելի վառ հեռանկարներ բացեց ատոմային միջուկի կազմության, տարրական մասնիկների բնույթի և նրանց փոխազդման ուսումնասիրությունը: Այդ ճանապարհին հայտնագործվեցին նյութի մի շարք կարևորագույն հատկություններ, որոնց ճանաչումը ավելի լայնորեն է օգտագործվում տեխնիկայի ու գիտության ամենաբազմազան բնագավառներում: Միջուկային ֆիզիկայի և տարրական մասնիկների ֆիզիկայի բնագավառում տեսական ու փորձնական հետազոտությունները պետք է հանդիսանան գիտության կենտրոնական ուղղություններից մեկը»:

Այդ պատճառով էլ Սովետական Միությունում հսկայական ուշադրություն է հատկացվում ֆիզիկայի այդ բնագավառի վրա, որն ամենից ավելի մանրամասն ու խորն է բացահայտում նյութի բնույթը: Մեզ մոտ ստեղծվում են լիցքավորված մասնիկների վիթխարի արագացուցիչներ, տարվում են տեսական ու փորձնական հետազոտություններ, ուսումնասիրվում են կոսմիկական ճառագայթները:

Ողջ ասվածից պարզ է, որ միկրոաշխարհում պետք է լինեն շատ անակնկալներ: Բայց, անկասկած, բոլոր տարրական մասնիկներից ամենազարմանալին նեյտրինոն է: Նեյտրինոյի ամենաբնորոշ հատկությունը նրա ցնցող-ներթափանցող ունակությունն է: Դա հիշեցնում է մի անեկդոտ այն մարդու մասին, որը, կենդանաբանական այգում նայելով ընձուղտին՝ փնթփնթում է. «Չի կարող պատահել»: Թող ընթերցողն ինքը դատի՝ նեյտրինոները կարող են անարգել թափանցել, ասենք, չուգունի սալի միջով, որի հաստությունը միլիոն անգամ գերազանցում է Երկրից մինչև Արեգակը եղած հեռավորությունից: Այստեղ նույնիսկ ամենահանգիստ ընթերցողի մոտ պետք է ծագեն տարակուսելի հարցեր՝ իսկ ինչպե՞ս կարելի է բռնել այդ անորսալի մասնիկը: Իսկ ընդհանրապես ինչպե՞ս կարելի է պնդել, որ այն գոյություն ունի:

Ես վախենում եմ, որ ընթերցողի կասկածամտությունը շատ ավելի մեծանա, եթե ասեմ, որ երեսուն տարի առաջ նեյտրինոն «տեսականորեն» հայտնագործել է շվեյցարական ֆիզիկոս Պաուլին: Այդ պատճառով էլ ես ուզում եմ իսկույն հանգստացնել ընթերցողներին՝ վերջերս փորձարարները բռնեցին նեյտրինոն: Բայց ինչո՞ւ էր պետք այն «հնարել»: Ինչպես գիտության մեջ հաճախ պատահում է, նոր գաղափարները առաջ են քաշվում այն ժամանակ, երբ գոյություն ունեցող իմացության շրջանակներում ծագում է պարադոքս: Նեյտրինոյի «գյուտը» առաջացել է այն թվացող պարադոքսից, որ հայտնաբերվել է ատոմային միջուկներով էլեկտրոնների ինքնակամ արձակման (այսպես կոչված բետա-տրոհման պրոցեսի) էքսպերիմենտալ հետազոտության ժամանակ: Պարզվել է, որ դուրս թռչող էլեկտրոնների չափված էներգիաները այդ պրոցեսում ոչ թե խիստ որոշակի են, այլ ամենաբազմազան: Մեծ մասամբ էներգիան բացարձակապես չէր բավարարում: Ստեղծվում էր այն տպավորությունը, թե նա ինչ-որ տեղ կորչում է, ասես թե էներգիայի պահպանման օրենքը ճիշտ չէր: Դժվարություններն այնքան լուրջ էին, որ նշանավոր ֆիզիկոսները առաջարկում էին հրաժարվել էներգիայի պահպանման օրենքից: Էներգիայի թվացող չպահպանվելը, սակայն, բավական տարօրինակ բնույթ ուներ: Իրոք, եթե էներգիան չի պահպանվում բետա-տրոհման պրոցեսում, ուրեմն, որոշ դեպքերում արձակվող էլեկտրոնների էներգիան բավական փոքր կլինի, իսկ այլ դեպքում՝ բավական մեծ: Սակայն պարզվեց, որ էներգիայի «շահում» չի լինում: Այսպիսով, փաստերը, որոնց միշտ պատկանում է վերջին խոսքը գիտության մեջ, բայց ոչ թե օրենքները անսասան պահպանելու բնական ձգտումը, հարկադրեցին բարձր պահել էներգիայի պահպանման դրոշը: Նեյտրինոյի «գյուտարարը» դատում էր այսպես. էներգիայի թվացող անհայտացումը պայմանավորված է նրանով, որ բետա-տրոհման պրոցեսը պարզապես սխալ է նկարագրված: Տրոհմանը պետք է մասնակցի փորձում անտեսանելի չեզոք մասնիկը, որը տանում է «անհայտացած» էներգիան: Եվ թեև ամեն մի պրոցեսում անջատվում է բոլոր մասնիկների ճիշտ որոշակի գումարային էներգիա, այն բաշխվում է տրոհման պրոդուկտների միջև այնպես, որ տարբեր դեպքերում էլեկտրոնը ստանում է նրա տարբեր բաժինները:

Ուրեմն, նեյտրինոն՝ դա մասնիկ է, որը բետա-տրոհման ժամանակ տանում է էներգիայի մի մասը: Այդպես էին ենթադրում ֆիզիկոս-տեսաբանները, որոնք հենց սկզբից այն գտան իբրև անորսալի մասնիկ: Եվ հենց իսկույն նախագուշակվեցին նրա հատկությունները՝ այն պետք է լինի էլեկտրաչեզոք և արտակարգ փոքր մասսայով (այլապես այն հեշտությամբ կտեսնեին): Վերջին հատկությունը, հարաբերական տեսության համաձայն, հանգեցնում է այն բանին, որ նեյտրինոն չի կարող գտնվել հանգստի վիճակում՝ այն միշտ

շարժվում է լույսի արագությամբ: Բացի դրանից, նեյտրինոյի անկապտելի հատկությունը պետք է լինի պտտվելը:

Ինչպես պարզվեց մյուս տարրական մասնիկների, հատկապես մեզոնների հայտնագործումից հետո, բացի բետա-տրոհումից, այն ի հայտ է գալիս միշտ, երբ էներգիան թվում է թե անհայտանում է: Ի դեպ, այդ պրոցեսներում էներգիայի «չպահպանման» բնույթն ավելի քան կասկածելի է և նեյտրինոների գոյությունն ավելի պարզորոշ կերպով է պահանջում, քան բետա-տրոհման դեպքում: Այսպես, օրինակ, մեզոնների տրոհման մի տեսակի պրոցեսներում միշտ անհայտանում է որոշակի էներգիա: Եթե այդ պրոցեսները ավելի շուտ հայտնի լինեին, քան բետա-տրոհումը, թերևս, անհրաժեշտ չլիներ Պաուլիի հանճարը նեյտրինոյի՝ էներգիայի այդ չբռնված գողի հայտնագործությունն անելու համար:

Հուսով եմ, որ ասվածը բավական է ընթերցողին համոզելու, որ նեյտրինոների գոյությունը տեսականորեն հիմնավորված է: Բայց չի կարելի մոռանալ, որ, չնայած իր անորսալիության, նեյտրինոն լիովին նյութական է և սկզբունքորեն մատչելի է գրանցման, որ նրա «անտեսանելիությունը» միայն էքսպերիմենտալ տեխնիկայի դժվարությունների հետևանք է: Ուստի ֆիզիկոսները, ինչպես նաև այս հոդվածի ընթերցողները իրավունք ունեն պահանջելու նեյտրինոյի հիպոթեզի «երկաթյա» ստուգում: Բռնել «անորսալին», ֆիզիկական սարքում գրանցել այն էֆեկտը, որ նեյտրինոն առաջացրել է իր ծագման աղբյուրից հեռու, ահա ինչն էր անհրաժեշտ այդ խորհրդավոր մասնիկի միստիկական լուսապսակը հանելու համար:

Ինչպես տեսանք, որպեսզի նեյտրինոն ռեակցիայի մեջ մտնի նյութի հետ, այն պետք է բաց թողնվի նյութի աստղագիտական հաստության միջով: Բայց էքսպերիմենտի պայմաններում նրան բռնելու համար կարելի է «աստղագիտական» թվով նեյտրոններ բաց թողնել ֆանտաստիկ հաստությունից հեռու, ասենք, հեղուկ կամ պինդ նյութի մետրական հաստության միջով:

Օգնության հասան ատոմային էներգիայի հայտնագործումն ու տեխնիկական յուրացումը: Հայտնի է, թե գիտության և տեխնիկայի մեջ ինչպիսի հսկայական նշանակություն ունեն միջուկային ռեակտորները՝ տեղակայումներ, որտեղ նեյտրոնների միջոցով մեծ մասշտաբով տեղի է ունենում ուրանի միջուկների բաժանում: Բաժանման յուրաքանչյուր գործողության ժամանակ գոյանում են մի քանի բետա-ռադիոակտիվ միջուկներ: Այդ պատճառով հզոր ուրանային ռեակտորը նեյտրինոների հենց մեկ անհրաժեշտ խիստ ինտենսիվ աղբյուրն է: Քննարկենք, օրինակ, մի քանի հարյուր կիլովատ կարողությամբ ատոմային ռեակտորը: Այդ ռեակտորի միջոցով արձակվող նեյտրինոների էներգիայի լրիվ հոսքը, հաշվարկումների համաձայն, կկազմի տասնյակ հազար կիլովատ: Շա՜տ շատ է: Եվ, այնուամենայնիվ որսալ «ներթափանցող» մասնիկները, չափազանց դժվար է: Այդ մյուս բոլոր մասնիկները կլանող ռեակտորի պաշտպանության միջով, յուրաքանչյուր քառակուսի սանտիմետրի մեջ մեկ վայրկյանում կներթափանցի տասը հազար միլիարդ նեյտրինո: Բայց ինչպե՞ս գրանցել նեյտրինոների գործունեությունը: Այստեղ օգնում է տեսությունը: Այն կանխագուշակում է, որ պետք է տեղի ունենան պրոցեսներ, որոնց ընթացքում նեյտրինոն կլանվում է պրոտոնի կողմից. վերջինս փոխարկվում է նեյտրոնի, էլեկտրոն արձակելով: Այդպիսի պրոցեսները, որոնք ասես թե բետա-պրոցեսների հակառակն են, փայլուն և դժվար փորձում հայտնաբերել են ամերիկացի ֆիզիկոսներ Ռայնսը և Կոուենը: Կարելի է մտածել, որ մեր ռեակտորից նեյտրինոները, ռմբակոծելով ջրածին (այլ կերպ ասած, պրոտոնների պաշար) պարունակող մեկ տոննա նյութը, պետք է ամեն ժամ առաջացնեն պրոտոնի մոտ հարյուր փոխարկում նեյտրոնի: Այդ փոխարկումները կարելի է հայտնաբերել միջուկային ֆիզիկայի լավ հայտնի էքսպերիմենտալ մեթոդների օգնությամբ, որոնք ընդունակ են գրանցելու լիցքավորված մասնիկների անցումը: Եվ այդ կանխատեսությունը իրականացավ: Ունիկալ «անորսալի» մասնիկը, վերջապես, բռնվել էր: Այժմ այն կայուն տեղ է գրավում նյութի հիմնավոր «աղյուսիկների» ընտանիքում:

Նեյտրինոների ֆանտաստիկ ներթափանցող ընդունակությունը հանդիսանում է մյուս մասնիկների հետ նրա արտակարգ թույլ փոխազդման արտացոլումը: Ի միջի այլոց, հենց այդպիսի փոխազդում են կրում նաև մյուս բոլոր մասնիկները: Սակայն նրանք, թույլերի հետ մեկտեղ, կրում են նաև այլ, անհամեմատ ավելի ուժեղ փոխազդումներ: Այդ պատճառով էլ նրանց ներթափանցելու ունակությունը չափվում է միայն, ասենք, տասը սանտիմետրանոց չուգունով: Իսկ նեյտրինոն ունիկալ է նրանով, որ այն ենթակա է միայն թույլ փոխազդումների, հանդիսանալով, այսպես ասած, նրանց ամենամաքուր ներկայացուցիչը:

Ուրանային ռեակտորները օգնեցին պարզելու նեյտրինոյի մի կարևոր հատկանիշը ևս: Հայտնի է, որ բնության մեջ գոյություն ունի շատ գեղեցիկ սիմետրիա, որը վերջին մի քանի տարում վերջնականապես հաստատվել է մի շարք հիմնավոր փորձերով: Այդ սիմետրիան այն է, որ յուրաքանչյուր մասնիկի համապատասխանում է երկվորյակը՝ հակամասնիկը, որն ունի միևնույն մասսան, իսկ բոլոր «լիցքերը» հակառակ նշանի են: Այստեղ «լիցքի» տակ հասկացվում է մասնիկի որևէ ներքին բնութագիրը. որին վերագրվում է կա՛մ



դրական, կա՛մ չեզոք, կա՛մ բացասական նշան: Լիցքի (պարտադիր չէ էլեկտրական) որևէ տեսակի անկապտելի հատկությունները հանդիսանում են անոչնչանալիությունը և դիսկրետությունը, այսինքն՝ միայն լիովին որոշակի արժեքներ ընդունելու ունակությունը:

Պարզ է, որ էլեկտրականապես լիցքավորված մասնիկը, ասենք բացասական էլեկտրոնը, կտարբերվի իր հակամասնիկից՝ դրական էլեկտրոնից: Բայց էլեկտրականապես չեզոք մասնիկն էլ կարող է տարբերվել իր հակամասնիկից: Իհարկե, եթե տվյալ մասնիկի բոլոր լիցքերը հավասար են զրոյի, ապա մասնիկն իր հակամասնիկի հետ նույնական է: Այն, իսկապես, չեզոք է, այսինքն՝ զրկված է բոլոր լիցքերից: Իսկ ի՞նչ վիճակումն է գործը նեյտրինոյի դեպքում: Ընթերցողն արդեն գիտե, որ այն էլեկտրաչեզոք է: Բայց արդյո՞ք նեյտրինոն իսկապես չեզոք է: Արդյո՞ք այն տարբերվում է անտինեյտրինոյից:

Ռեակտորով կատարած փորձերը տվեցին հետևյալ պատասխանը՝ այո՛, նեյտրինոն և անտինեյտրինոն տարբեր մասնիկներ են: Նեյտրինոն ունի ոչ էլեկտրական, այսպես կոչված՝ նեյտրինոնային լիցք: Այդ լիցքի բնույթը շատ հետաքրքրական է: Դա պարզվեց միայն մի քանի տարի առաջ, հատկապես չինացի ֆիզիկոսներ Լիի և Յանգի ու սովետական ֆիզիկոս Լանդաուի տեսական աշխատությունների շնորհիվ: Պարզվում է, որ նեյտրինոն ու անտինեյտրինոն պտտվում են դեպի տարբեր կողմեր իրենց շարժման ուղղության նկատմամբ: Դա է նրանց միջև եղած միակ տարբերությունը: Նեյտրինոնային լիցքը «պարուրաձև» է, ընդ որում նեյտրինոն կհիշեցնի ձախ գալարներով խցանահանը, իսկ անտինեյտրինոն՝ աջ գալարներով խցանահանը:

Իսկ այժմ ես պետք է ներողություն խնդրեմ ընթերցողներից. վերը պարզության համար ես ասացի, որ ուրանային ռեակտորը նեյտրինոների աղբյուր է, բայց այդ ճիշտ չէ. իրականում, եթե ելնենք բոլորի կողմից ընդունված բնորոշումից, ռեակտորն արձակում է անտինեյտրինոներ:

Այն, ինչ մինչև հիմա ես պատմում էի, դա նեյտրինոյի անցյալն է: Բայց այդ մասնիկի հատկությունների հետազոտությունները բուռն կերպով զարգանում են, և ես ուզում եմ գոնե մի քանի խոսք ասել չլուծված առեղծվածների մասին: Խոսքը բարձր էներգիաների նեյտրինոների ֆիզիկայի՝ տարրական մասնիկների հետազոտության նոր բնագավառի մասին է, որը հենց նոր է ստեղծվել սովետական ու արտասահմանյան ֆիզիկոսների ջանքերով: Ռեակտորներում ծնվող նեյտրինոները օժտված են մի քանի միլիոն էլեկտրոն-վոլտ էներգիայով: Դա միլիոն անգամ մեծ է ատոմի էլեկտրոնների էներգիայից: Բայց այսօր, երբ մեքենաներ կան, որոնք մասնիկները արագացնում են մինչև տասնյակ միլիարդ էլեկտրոն-վոլտի, ռեակտորներն արդեն դիտվում են իբրև «ցածր էներգիայի» նեյտրինոների աղբյուրներ:

Բայց բանը միայն էներգիայի մեծությունը չէ. բարձր էներգիաների նեյտրինոների ֆիզիկան հետազոտում է «մեզոնային բնույթի» նեյտրինոները. այսինքն՝ մեզոնների տրոհման ժամանակ ծնվող մասնիկները: Այստեղ անմիջապես հարց է ծագում: Նույնակա՞ն մասնիկներ են արդյոք «անորսալի» նեյտրինոները, որոնք արձակվում են բոլորովին տարբեր պրոցեսներում: Ավելի ճիշտ՝ որևէ բանով տարբերվո՞ւմ են արդյոք տրոհվող մեզոնների միջոցով արձակված «մեզոնային» նեյտրինոները «էլեկտրոնային նեյտրինոներից» — ընթերցողին արդեն ծանոթ մասնիկներից, որոնք ծնվում են բետա-տրոհման պրոցեսներում: Ահա այսօրվա ֆիզիկայի կենտրոնական հարցերից մեկը: Այդ պրոբլեմի լուծումը պահանջում է հսկայական միջոցներ և վիթխարի արագացուցիչներ, որոնք լիցքավորված մասնիկները հասցնում են տասնյակ միլիարդ էլեկտրոն-վոլտ էներգիայի: Նրանց մեջ կարելի է ստանալ մեզոնների ինտենսիվ փնջեր, որոնք, տրոհվելով, ստեղծում են մեզոնային բնույթի նեյտրինոների հոսքեր: Այդ տեսակի էքսպերիմենտներ այժմ տարվում են աշխարհի կանական լաբորատորիաներում:

Նեյտրինոների ֆիզիկային վիճակված է լուծել նաև այլ հարցեր: Նրանցից մեկի մասին ես ուզում եմ համառոտակի պատմել, քանի որ այն առաջնակարգ կարևորություն ունի այն օրենքները հասկանալու համար, որոնց ենթարկվում է միկրոաշխարհը: Տեղի՞ ունի արդյոք նեյտրինոների ցրում էլեկտրոնների միջոցով, այսինքն՝ կարո՞ղ են արդյոք էլեկտրոնները շեղել նեյտրինոներին նույն հավանականությամբ, որով կատարվում են մյուս այն բոլոր պրոցեսները, որոնց մասնակցում են նեյտրինոները: Համապատասխան էքսպերիմենտի կազմակերպումը, ըստ երևույթին, այնքան էլ հեշտ չի լինի: Այստեղ ուզում եմ միայն նշել, որ այդ ավելի վերացական, թվում էր միայն տարրական մասնիկների ֆիզիկայի համար հետաքրքրական հարցը մեծ նշանակություն ունի նաև աստրոֆիզիկայի համար: Իրոք, վերջերս ցույց է տրվել, որ էլեկտրոն-նեյտրինոնային փոխազդման գոյության հիպոթեզը հանգեցնում է այն մտքին, որ կան աստղերի կողմից էներգիայի կորստի նոր հզոր մեխանիզմներ, որոնք հիմնված են նեյտրինո-անտինեյտրինո զույգի արձակման վրա:

Ոչ մի տեղ այնպես պարզորոշ երևան չի գալիս միկրոաշխարհի և կոսմոսի կապը, ինչպես նեյտրինոների ֆիզիկայում: Բայց շատ են նեյտրինոնային աստղագիտության և կոսմոգոնիայի պրոբլեմները: Բացի դրանից ընթերցողը, հավանաբար, զգում է, որ այսօր նա ստացել է արդեն նեյտրինոների առնվազն մեկ տարվա դոզա:

«ԻԶՎԵՍՏԻԱ» 24 մարտի, 1962 թ., № 71 (13925)

